ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 15 1986

ԳԵՎՈՐԳ ԱԲԳԱՐՅԱՆ

# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ «ԺԱՄԱՆԱԿԱԿԱՆ ԿԱՆՈ՛ՆԸ» ԿԱՄ «ՔՐՈ՛ՆԻԿՈ՛ՆԸ»

*Հայկական հնագույն թղթյա ձեռագիրը, որը 1951-ին բոլորեց իր հազարամյակը և այժմ պահվում է Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում (ձ. 2679), նշանավոր է ոչ միայն որպես ամենահին թղթյա մատյաններից մեկն աշխարհում, այլև որպես գիտական մեծ կարևորություն ունեցող գիրք-գրադարան: Նրանում ընդգրկված են միջնադարյան գիտության զանազան բնագավառների (պատմություն, փիլիսոփայություն, աստվածաբանություն, մաթեմատիկա, տիեզերագիտություն, օդերևութաբանություն, տոմարագիտություն և այլն) պատկանող երկեր: Համաշխարհային ձեռագրական մշակույթի այս հազվագյուտ հուշարձանում ընդօրինակված նյութերի ուսումնասիրությամբ զբաղվել են հայ և օտար մի շարք գիտնականներ: Ձեռագրին դիմելու առիթներ ունեցել ենք նաև մենք[1]: Այսօր մեզ հետաքրքրողը ձեռագրում ընդօրինակված ժամանակագրությունն է, որը հրատարակվել է 1904 թ. Վենետիկում[2] և 1944 թ. Երևանում[3]:*

*Հայ և հույն հեղինակավոր մատենագիրների երկերի օգտագործմամբ կազմված այս ժամանակագրական հուշարձանը վաղուց արդեն գրավել է մասնագետների ուշադրությունը և դուրս է եկել միջազգային ասպարեզ: 1902 թ. Համբուրգում կայացած արևելագիտական կոնգրեսում նրան նվիրված գերման-*

---

1 *Թղթյա ձեռագրի և Շիրակացուն վերագրված ժամանակագրության ընդօրինակություններից մեկը պարունակող № 6228 ձեռագրի համեմատությամբ պարզել ենք, որ ընդօրինակությունը կատարվել է ոչ թե անմիջապես թղթյա ձեռագրից, ինչպես որ ենթադրվել է, այլ Վենետիկի Մխիթարյան մատենադարանում պահվող № 218 ձեռագրից (տե՛ս մեր «Սեբեոսի Պատմությունը և Անանունի առեղծվածը», Երևան, 1965, էջ 112—113): Բացի այդ՝ առանձին հոդվածներ ենք նվիրել թղթյա ձեռագրում պահպանված «Յաղագս ամպոց և նշանաց» օդերևութաբանական երկին (հոդվածների մատենագիտությունը տե՛ս Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հ. 2, Երևան, 1976, էջ 727—729), ինչպես նաև Անանիա Շիրակացուն վերագրված ժամանակագրությանը (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 10, 1971, էջ 477, «Լրաբեր» ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների, 1974, № 7, էջ 76 և 1975, № 10, էջ 86):*

2 *Անանուն ժամանակագրութիւն. խմբագիր յօրինեալ յ է դարու ի հնագոյն ժամանակագրաց և հրատարակեալ ներածութեամբ և բաղդատութեամբք... Վենետիկ, 1904: Հրատարակիչ Բարսեղ Սարգիսյանը ժամանակագրությունը համեմատել է լատիներեն հին թարգմանության հետ (հունարեն բնագիրը դեռևս կորած էր համարվում) և նշել լատիներենի կարևոր ընթերցվածքները:*

3 *Հրատարակել է Աշ. Աբրահամյանը «Պատմութիւն Անանիայի Շիրակայնւոյ համարողի» խորագրով (որը հրատարակչինն է): Տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 357—399: Այսուհետև՝* Շիրակացու մատենագրությունը:

րեն զեկուցմամբ հանդես եկավ Գր. Խալաթյանցը[4], որը բացահայտեց կապը ժամանակագրության և հույն մատենագիր Հիպողիտոսի (մ. թ. III դար) Քրոնիկոնի լատիներեն թարգմանության (Liber generationis) միջև: Հետագայում հայտնաբերվեց և տպագրվեց Հիպողիտոսի երկի հունարեն բնագիրը, որի հրատարակիչները անհրաժեշտ գտան հարակից հրատարակել նաև Թղթյա ձեռագրում Հիպողիտոսի երկին համապատասխանող հատվածի գերմաներեն թարգմանությունը, ընդգրկելով Շիրակացուն վերագրված ժամանակագրության սկզբից մինչև «Թագաւորք Պարսիկք Սասանականք» խորագրի տակ ընդօրինակված ցանկը ներառյալ[5]: Թեև մինչ այդ հայերեն հրատարակության հեղինակ Բարսեղ Սարգիսյանն արդեն մեծ և անգնահատելի աշխատանք էր կատարել ժամանակագրության ուսումնասիրման, լուսաբանման և Liber generationis-ի լատինական տեքստի հետ համեմատելու ուղղությամբ, այդուհանդերձ հունարեն բնագրի հայտնաբերումը նպաստեց Թղթյա ձեռագրի միջոցով մեզ հասած ժամանակագրական երկը բազմակողմանի և ավելի մանրամասն ուսումնասիրելու գործին:

Այդ շնորհակալ գործը գլուխ բերեցին Ա. Բաուերը և Յ. Մարկվարտը[6]: Համառոտակի թվարկենք նրանց աշխատությամբ հայտնի դարձած այն նորությունները, որոնք այսօր հետաքրքրում են մեզ[7]:

Առաջին. Շիրակացուն վերագրված ժամանակագրությունը ոչ թե մեկ հեղինակի ձեռքով հավաքված, խմբագրված և միմյանց հարմարեցված ժամանակագրական աղբյուրների ժողովածու է, ինչպես ենթադրվում էր մինչ այդ, այլ բաղկացած է երեք տարբեր հատվածներից, որոնք անփոփոխ ի մի են բերված ձեռագրի պատվիրատուի և ստացողի նախաձեռնությամբ: Երկրորդ. Ժամանակագրության հիպողիտյան հատվածի հայերեն թարգմանությունը կատարվել է ոչ թե անմիջապես III դարում Հիպողիտոսի գրած երկից, այլ V—VI դարերում վերամշակված ալեքսանդրյան խմբագրությունից[8]: Երրորդ. Անանիա Շիրակացին ծնվել է 620 թ. և վախճանվել է 705 թ.: Նա իր ուսուցիչ Տյուքիկոսի

[4] Chalatiantz Gr., Die armenische Version der Weltchronik des Hippolytus:— Wiener Zeitschr. f. d. Kunde des Morgenlandes. Bd. 17, 1903. էջ 182—186: Նաև «Հանդես Ամսօրյա», 1904, էջ 46—48:

[5] *Hippolytus Werke*, 4 Bd., Die Chronik: hergestellt von Adolf Bauer... Nebst ein Beitrag von J. Markwart, Leipzig, 1929. Մարկվարտի թարգմանությունը և ուսումնասիրությունը գտնվում է այս նշանավոր հրատարակության 393—558 էջերը: Այսուհետև՝ *Hippolytus Werke*.

[6] Ա. Բաուերը մեռել էր նախքան հրատարակությունը, իսկ Մարկվարտի կյանքը ողբերգական վախճան ունեցավ հրատարակվելուց երկու-երեք ամիս անց, 1930-ի փետրվարին: Նրանց աշխատության վերահրատարակիչները, խախտելով հեղինակների կամքը, Հիպողիտոսի հունարեն բնագիրը հետագայում հրատարակեցին առանց հայկական հուշարձանին վերաբերող բաժնի (Hippolytus Werke, 4 Bd., Die Chronik, Berlin, 1955): Ա. Բաուերի և Յ. Մարկվարտի հրատարակությունը լույս էր տեսել շատ սահմանափակ քանակով և հեղինակների բացակայության պայմաններում Գերմանիայի սահմաններից դրեթե դուրս չեկավ:

[7] Մարկվարտի և Բաուերի հայտնած որոշ նորություններ մենք քննել ենք 1969 թ. մայիսի 23-ին, Մաշտոցի անվան Մատենադարանի 11-րդ գիտական նստաշրջանում, «Անանիա Շիրակացուն վերագրված ժամանակագրության հարցի շուրջը» զեկուցման մեջ:

[8] Նախամեսրոպյան գրականության ուսումնասիրման գործում ալեքսանդրյան խմբագրության նշանակության մասին մենք արդեն խոսել ենք Վիգեն Խեչումյանի «Գիրք գրոցի» (Երևան, 1978) համար մեր գրած առաջաբանում (էջ 20—21):

մատ գնացել է 16 տարեկան հասակում։ Տյուքիկոսն իր պատանեկությունն անցկացրել է զորավար Յոհաննես Միստիկոնի պալատում։ Այս փաստերը բացահայտվում են հունական համապատասխան աղբյուրների քննությամբ, որը կատարվել է Անանիա Շիրակացու ինքնակենսագրության գերմաներեն թարգմանության և համեմատական ուսումնասիրության հիման վրա։ Չորրորդ. Անանիա Շիրակացու «Քրոնիկոնը» եղել է հարուստ բովանդակություն ունեցող մի ժողովածու։ Դա ապացուցվում է Գրիգոր Մագիստրոսի՝ Պետրոս Գետադարձին հասցեագրած նամակով, որը Մարկվարտը վերծանել և թարգմանել է գերմաներեն։

Նորություններից առաջինը, ինչպես տեսանք, վերաբերում է Թղթյա ձեռագրում գտնվող ժամանակագրության հեղինակին։ Վերջինիս Անանիա Շիրակացու հետ նույնացրել է առաջին անգամ Թղթյա ձեռագրին ընդօրինակող գրիչը, որը Վենետիկի № 218 և Մաշտոցի անվան Մատենադարանի № 6228 ձեռագրերում (էջ 79 ա) թողել է հետևյալ հիշատակագրությունը. «Առաջիկայ ժամանակագրական ճառսդ յօրինեալ զուգադրութեամբ այլևայլ մատենագրաց՝ Մովսիսի Խորենացւոյ եւ Անդրէասի, Եպիփանու, Եւսեբի, թուի նոյնպէս Շիրակացւոյն լինել, զի հասանէ ցուցս իւր ի ՃԼԴ թուականին»[9]։ Հետագա գրեթե բոլոր ուսումնասիրողները ժամանակագրության հեղինակ են համարել Շիրակացուն։ Մարկվարտը, սակայն, Շիրակացուն վերագրել է ժամանակագրության միայն երկրորդ կեսը՝ «Կայսերաց գիրքը», որը ձեռագրում սկսվում է այսպես. «Կայսերք Հռովմոց, թէ որչափ ամք կալան կամ ամիսք եւ զինչ գործ գործեցին»[10]։ Այս կեսը ձեռագրերում հանդիպում է նաև մյուս կեսից անջատ ընդօրինակված վիճակում[11]։

Հօգուտ իր տեսակետի Մարկվարտը վկայակոչել է այն փաստը, որ «Կայսերաց գրքի» հեղինակը, ինչպես և Շիրակացին, առանձնահատուկ ուշադրություն են ցուցաբերում տոմարագիտական հաշիվների նկատմամբ։ Դա իսկապես այդպես է, սակայն «Կայսերաց գիրքը» օգտագործած պատմիչներից Ուխտանեսը, Հովհաննես Սարկավագը, Վարդան Բաղիշեցին[12] և այլք Շիրակացու անունը չեն տալիս և առհասարակ չեն ճանաչում այդ երկի հեղինակին։ Ավելին. Սարկավագը և Բաղիշեցին «Կայսերաց գիրքը» որոշակիորեն տարբերում են Շիրակացու երկերից, թեև՝ ուրիշ հեղինակի չեն ճանաչում[13]։ Հիշենք նաև, որ Բաղիշեցին «Կայսերաց գրքից» բացի իր ցուցակում գրանցել է ևս մի պատ-

9 Այս տեղեկությանը վերաբերող ծանոթագրությունում (տե՛ս մեր «Սեբեոսի Պատմությունը և Անանունի առեղծվածը», էջ 112, ծ. 187, տող 4) Բ. Սարգիսյանի անունը հիշատակված է սխալմամբ։

10 «Կայսերաց գիրքը» զետեղված է Շիրակացու երկերի 1944 թ. հրատարակության 378—399 էջերում։

11 Բ. Սարգիսյանը ժամանակագրության 1904 թ. հրատարակությունում «Կայսերաց գիրքը» դիտում էր որպես անբաժան մաս, սակայն 1924-ին գտավ, որ ձեռագրերում այն ավելացվել է հետագայում։ Տե՛ս Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ։ Յօրինեց Հ. Բ. Սարգիսեան, հ. 2, Վենետիկ, 1924, էջ 279։

12 Տե՛ս մեր հոդվածը, «Բանբեր Մատենադարանի», № 10, 1971, էջ 440։

13 Տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը, Երևան, 1956, էջ 224 և Վարդան Բաղիշեցու կազմած Ձեռագրաց ցուցակը («Արարատ», 1903, էջ 184)։

մագիրք[14], որը «Կայսերաց գրքի» հետ նույնանալ չի կարող, որովհետև «Կայսերաց գիրքը» ցուցակում գրանցված է առանձին, որպես Շիրակացուն չպատկանող երկ, այնինչ հիշյալ պատմագիրքը գրանցված է հենց Շիրակացու անվամբ:

Տեսնենք՝ ինչ է ասում ինքը Շիրակացին իր գրած ժամանակագրական երկի մասին: «Ի Զատիկն Տեառն» երկում նա գրում է. «Եւ արար Յեսու ի ԻԲ ամսոյն առաջնոյ զատիկ. բայց անուանէ ի չորեքտասան՝ ըստ աւուրցն լուսնի: Եւ առնէ նորոգումն կարգացն եղծելոց անապատին. եւ առնէ իբրեւ ի նորոյ սկիզբն կարգաց եւ աւրինաց որպէս եւ Մովսէս յելանելն յԵգիպտոսէ. քանզի եւ զանցանելն զՅորդանան գետով՝ ելս կոչէ յԵգիպտոսէ: Որպէս եւ ի ժամանակա/կա/ն կանոնի նախապատում հանդիսին մերոյ ճառեցաք»[15]: Ինչպես տեսնում ենք, Շիրակացին հայտնում է, որ իր գրած «ժամանակական կանոնում» արդեն նախօրոք խոսել է այն մասին, որ Հորդանան գետն անցնելը նույնպես համարվում է ելք Եգիպտոսից. «Եւ զանցանելն զՅորդանան գետով՝ ելս կոչէ յԵգիպտոսէ»: Ուրեմն բավական է, որ «Կայսերաց գրքում» կամ նրա հետ միասին ընդօրինակված ժամանակագրական հատվածներում գտնեինք Շիրակացու հայտնած միտքը, ինքնըստինքյան կպարզվեր, որ «ժամանակական կանոնը» դա է:

Նման միտք չենք գտնում Շիրակացու մեզ հասած երկերից և ոչ մեկում: Կնշանակի՝ «ժամանակական կանոնը» մեզ չի հասել:

Այդուհանդերձ բանասիրության մեջ հայտնվել է այն համոզմունքը, որ Շիրակացին նկատի է ունեցել «Կայսերաց գիրքը» պարունակող ժամանակագրական ժողովածուն: Հ. Անասյանը գրում է. «Անանիա Շիրակացին իր Զատկի ճառում գրում է... որ ինքը Հորդանանի անցման մասին արդեն գրել է իր «ժամանակական կանոնում»: Իսկ ո՞րը նկատի ունի Անանիա Շիրակացին իր աշխատությունների մեջ «ժամանակական կանոն» անունով. դա հենց այն հայտնի ժամանակագրությունն է, որ առաջին անգամ Վենետիկյան Մխիթարյանները հրատարակեցին 1904 թվին... և որ վերջին տարիներս պրոֆ. Ա. Գ. Աբրահամյանը կրկին հրատարակեց Անանիա Շիրակացու երկերի շարքում: Եվ իրոք այս ժամանակագրության մեջ խոսվում է Հորդանանի անցման մասին. «Յեսու որդի Նաւեայ իբրև անց ընդ Յորդանան գետ, եկաց յերկրին Քանանացւոց ամս քսան և ութն... և այլն» ... Մեր բերած այս ուղղակի փաստով այլևս անվիճելիորեն հաստատվում է, որ ...Անանուն «Ժամանակագրությունը»... իրոք Անանիա Շիրակացու աշխատությունն է»[16]:

Հ. Բարթիկյանը համեմատել է Հ. Անասյանի Զատկի ճառից վկայակոչած հատվածը Շիրակացուն վերագրված ժամանակագրության հետ և գրել. «Ինչպես պարզ երևում է այս համեմատությունից, Անանիա Շիրակացին իր Զատկի ճառում ամենևին էլ չի ակնարկում «ժամանակագրության» մեջ հիշատակված

---

14 «Գ (=Յ) պատմագիրք այլ կայ. մինն է Դաւթի վարդապետի պատմագիրք և միւս Անանիայի Շիրակացոյն և միւս Սոկրատ պատմագիրք» (Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 737, էջ 224բ): Ի դեպ՝ այս գրանցումը վկայակոչելիս մենք «Գ պատմագիրք»-ը անուշադրաբար կարդացել ենք «Բ պատմագիրք» և հանգել դրանից բխող եզրակացության (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 10, 1971, էջ 451):

15 Շիրակացու Մատենագրությունը, էջ 294:

16 Հ. Ս. Անասյան, Բուզանդարանի ռուսերեն թարգմանությունը, Երևան, 1954, էջ 8—9:

վերոհիշյալ փաստը»[17]: Սույն տարակուսանքն իրականությանը համապատասխանում է այնքանով, որ համադրված հատվածները տարբեր բովանդակություն ունեն: Բայց ընթերցողն Անասյանին դիմելիս նկատում է, որ նա ուշադրություն է հրավիրել հատկապես մասնակի այն փաստի վրա, որ երկու հատվածներում էլ խոսվում է Հորդանանի անցման մասին: Եվ հատվածներում իրականում էլ գտնում ենք հենց այն, ինչ նշել է Անասյանը: Զատկի ճառում ասված է. «... գանցանելն զՅորդանան գետով...» իսկ ժամանակագրությունում՝ «... իբրև անց ընդ Յորդանան գետ»: Հետևաբար Անասյանին ժխտելու համար հարկավոր է ցույց տալ Զատկի ճառի և Շիրակացուն վերագրվող ժամանակագրության միջև առկա անհամապատասխանությունը ակնհայտ դարձնող ավելի որոշակի փաստ: Իսկ այդ փաստն այն է, որ Զատկի ճառում Շիրակացին ոչ թե խոսում է սոսկ Հորդանանն անցնելու մասին, այլ հայտնում է, որ Հորդանան գետից անցնելը համարվում է ելք Եգիպտոսից: Ահա այս միտքն է, որ չկա Շիրակացուն վերագրվող ժամանակագրությունում, որով և ապացուցվում է այստեղ և Զատկի ճառում հիշատակվող «Ժամանակական կանոնի» տարբերությունը:

Բարեբախտաբար մեզ է հասել նաև մեկ այլ աղբյուր, որով ստուգվում և հաստատվում է Շիրակացու խոսքը «Ժամանակական կանոնի» մասին: Այդ աղբյուրը Ասողիկի Տիեզերական պատմությունն է: Այստեղ կարդում ենք. «Իսկ Հրէից վարդապետք և Եւսեբի ժամանակագիր ՆՁ ամ ասեն յելիցն յԵգիպտոսէ մինչև ցշինուած տաճարին: Իսկ Որոգինէս և Անանիա ՆՂ ամ ասեն, համարելով և զԺ ամն Եղոնի դատաւորին: Եւ վասն ճառելոյ Գրոց Թագաւորութեանն Նեռ ամին՝ այսպէս ասէ, եթէ **Յորժամ զՅորդանանաւ անց ժողովուրդն... զայն ևս կոչէ**, որպէս և պատգամաւորէին առ միմիանս Թագաւորքն՝ **եթէ Ազգ ել յԵգիպտոսէ**»[18]: Ընդգծված բառերը ցույց են տալիս, որ Ասողիկը կարդացել է Անանիա Շիրակացու «Ժամանակական կանոնը» և գրեթե բառացի կրկնել է Զատկի ճառում հայտնված տեղեկությունը Հորդանանից անցնելու և Եգիպտոսից դուրս գալու մասին:

Որ Ասողիկը Որոգինեսի հետ միասին Անանիայի անունը նշելով հասկացել է ոչ թե մեկ ուրիշ Անանիայի, այլ Անանիա Շիրակացուն, երևում է նաև հետևյալ հատվածից. «Իսկ յելիցն յԵգիպտոսէ մինչև ցշինուած տաճարին ըստ Որոգինեայ և Անանիայի Շիրակացւոյ ժողովին ամք ՆՂ»[19]:

Ասողիկից քաղված հատվածների միջոցով միաժամանակ որոշ պատկերացում ենք կազմում Շիրակացու «Ժամանակական կանոնում» եղած նաև այլ տվյալների մասին: Նույն կարգի ժամանակագրական տեղեկություններ են հայտնում նաև Հովհաննես Սարկավագը[20], Գրիգոր Տղան[21], Գրիգոր Տաթևացին[22] և ուրիշներ, որոնք տոմարական հաշիվներ կատարելիս Շիրակացու ա-

17 Հրաչ Բարթիկյան, Անանիա Շիրակացուն վերագրվող «ժամանակագրության» և նրա բանաքաղի հարցի շուրջը, «Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 68:

18 Ստեփանոս Տարօնեցի Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 11—12: Այսուհետև՝ Ասողիկ:

19 Անդ, էջ 9:

20 Ա. Գ. Աբրահամյան, Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը, Երևան, 1956, էջ 224: Այսուհետև՝ Հովհաննես Սարկավագ:

21 Մատենադարան, ձեռ. № 3062, էջ 61բ և «Գրիգորի կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ նամականի», Վենետիկ, 1838, էջ 23:

22 Գրիգոր Տաթևացի, Գիրք հարցմանց, Կոստանդնուպոլիս, 1729, էջ 451:

նումը տալով վկայակոչում են նրա՝ մեզ հասած աշխատություններում չհանդիպող հաշվարկումներ։ Արդյոք դրանք նույնպե՞ս գտնվել են «Ժամանակական կանոնում», թե մեզ չհասած մեկ այլ երկում, չենք կարող ասել։

Շիրակացու և Ասողիկի վկայություններից արդեն գիտենք, որ «Ժամանակական կանոնն» ընդգրկել է ժամանակագրական՝ տոմարական տեղեկություններ հատկապես զատկի օրը ճշգրտելու վերաբերյալ։ Գիտենք նաև, որ «Ժամանակական կանոնը» ընդարձակ պատմագիրք չի եղել։ Դա երևում է նրանից, որ Ասողիկն իրենից առաջ գրված պատմագրքերը թվարկելիս Շիրակացու անունը չի տալիս[23]։ Դարձյալ Ասողիկն է, որ գրում է. «Իսկ Անաստաս խորհեալ Հայաստանեայցս կարգել տոմար անշարժ ըստ այլոց ազգաց, և հրամայէ Անանիայի Շիրակացւոյ կարգել զՔՆնիկոնն հրաշազան, յորում զտոմարս մեր կարգեաց անշարժ։ Եւ Անաստասայ խորհեալ ժողովով և եպիսկոպոսօք հաստատել զՔՆնիկոնն և վախճանի, կացեալ յաթոռն ամս Զ»[24]։ Այստեղ երկու անգամ հիշատակված «ՔՆնիկոն» բառն այլ բան չէ, քան «Քրոնիկոն» բառի աղճատումից ծագած նույնիմաստ տարընթերցվածք, որը նույնանում է «Ժամանակական կանոնի» հետ։

Անաստաս կաթողիկոսի անվան հետ կապվող մի ժամանակագրական երկի մասին վկայում է նաև Մաշտոցի անվան մատենադարանի № 2220, 2271 ձեռագրերում պահված «Պատմագիրք հայոց» կոչվող մատենագիտական ցանկը[25], որում կարդում ենք. «Անանիա Շիրակացին. սկիզբն առեալ յԱդամայ համառօտ գաւազանաւ իջանէ մինչև ի ժամանակս Անաստասայ կաթողիկոսին»[26]։ Հնարավոր է, որ այս տեղեկությունը կազմված լինի Ասողիկի վերոհիշյալ հաղորդման հիման վրա, ինչպես որ Կիրակոս Գանձակեցու հետևողությամբ կազմվել է Ղազար Ճահկեցու տեղեկությունը. «Անանիա ի Շիրակ գաւառէն... Զսա կոչեաց առ ինքն տէր Անաստաս կաթողիկոսն, զի արասցէ անշարժ տոմարս Հայոց որպէս այլոց ազգաց, զոր արար մեծաւ ջանիւ»[27]։

«Ժամանակական կանոնի» մասին վկայող աղբյուրների շարքը պետք է դասել նաև Վարդան Բաղիշեցու կազմած ձեռագրացուցակը, որից երևում է, որ

---

23 Ասողիկ, էջ 6—7։ Այստեղ թվարկված հայ պատմիչներն են՝ Ագաթանգեղոս, Մովսես Խորենացի, Եղիշե, Ղազար Փարպեցի, Փավստոս Բուզանդ, Սեբեոս, Ղևոնդ, Շապուհ Բագրատունի, Հովհաննես Դրասխանակերտցի։

24 Ասողիկ, էջ 99։

Ասողիկի տեղեկությունը հաստատում է նաև Հովհաննես Դրասխանակերտցին, առանց «ՔՆնիկոն» խորագիրը նշելու։ Տե՛ս նրա «Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 92։

25 Ցանկին նվիրված մեր ուսումնասիրությունը տե՛ս Գ. Վ. Աբգարյան, Բանասիրական հետախուզումներ, «Բանբեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 61—68։ Հմմտ. Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հ. Ա. 1959, Առաջաբան, էջ 20—21, 53—55։

26 Հ. Անասյան, նշվ. աշխ., էջ 54։

Մաշտոցի անվան մատենադարանի № 5254 ձեռագրում, ինչպես նաև Վենետիկի Մխիթարյան մատենադարանում և այլուր պահվող որոշ ձեռագրերում Անանիա Շիրակացուն վերագրվող ժամանակագրությունն սկսվում է Ադամից և ավարտվում Անաստաս կաթողիկոսի օրոք իշխած բյուզանդական կայսր Կոստանդինի ժամանակով։ Այսպիսի մի ձեռագիր տեսնելով, մյուս կողմից էլ տեղյակ լինելով Ասողիկի և այլոց հայտնած տեղեկությանը Անաստաս կաթողիկոսի և Շիրակացու մասին, «Պատմագիրք հայոցի» հեղինակը կարող էր իր տեսած ձեռագրերում գտնված ժամանակագրությունը վերագրել Շիրակացուն, չնայած մեզ հասած ոչ մի ձեռագրում Շիրակացու անունը չկա։

27 Անդ, էջ 45։

Ամրդոլու վանքի մատենադարանում 1689—1704 թվականներին[28] պահվել է այդ երկի երկու օրինակ, որոնք ցուցակում գրանցված են «Քննիկոն» անվամբ. «Ա[=1] գիրք ոսկով. Բառգիրքն է սուրբ Յով[հաննէ]սին, որ է Անանիա Շիրակացւոյն, որ է Քննիկոն»[29] «Ա գիրք Անանիայի Քննիկոն»[30]։

Թեև այս ցուցակում «Ժամանակական կանոնի» կամ «Քրոնիկոնի» փոխարեն գրված է «Քննիկոն» (ինչպես որ Ասողիկի ձեռագրերում), սակայն համապատասխան աղբյուրների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ միջնադարյան Հայաստանում «Ժամանակական կանոն», «քրոնիկոն», «քննիկոն», «գաւազան» (կանոն), «տոմար» և նման այլ բառերը միևնույն նշանակությունն են ունեցել։ Սույն փաստը վրիպել է Յ. Մարկվարտի ուշադրությունից։ Նա 1929 թ. հրապարակված վերոհիշյալ աշխատության մեջ առանձին քննության է ենթարկել «քրոնիկոն» և «քննիկոն» բառերը և եզրակացրել, որ դրանք արտահայտում են տարբեր իմաստներ։ Նրա կարծիքով Ստեփանոս Մալխասյանցը ճիշտ չի վարվել, երբ Ասողիկի Պատմության ձեռագրերում գտնվող «զՔննիկոնն հրաշալան»-ը սրբագրել է «զՔրոնիկոնն հրաշալան» ձևով։ Նա գրում է. «Մալխասյանցը Քննիկոնը դարձնում է Քրոնիկոն, բայց Գրիգոր Մագիստրոսը... նույնպես ունի Քննիկոն։ Պետրոս կաթողիկոսին ուղղած մի նամակում նա, ըստ նամակի խորագրի, խնդրում է Անանիա Շիրակացու մի գիրքը, որը կոչվում է մեծ Քննիկոն»[31]։ Այնուհետև նա վերծանել և գերմաներեն է թարգմանել Շիրակացու ժողովածուի բովանդակությունը ներկայացնող նամակը և ավելացրել. «Սրանից երևում է, որ Անանիայի երկը բոլորովին էլ միայն ժամանակագրությանը չի վերաբերել։ Ուստի «Քրոնիկոն» վերնագիրը քիչ կհամապատասխաներ այդ գրքին։ Ես կարծում եմ պետք է ընդունել «Քննիկոն» ձեռագրական ընթերցվածքը։ Անանիան ստեղծել է մի այլախառն (hybride) բառակազմություն «քննել» բայից և հունական վերջավորությունից։ Սպասելի էր կամ՝ քննական կամ հուն. κριτικον[32]։

Այս կարծիքի ելակետը, ինչպես տեսնում ենք, այն է, որ Շիրակացու գիրքն ընդգրկել է տարբեր բովանդակություն ունեցող շատ երկեր, որոնք, ըստ Մարկվարտի, չէին կարող կրել միայն ժամանակագրությանը վերաբերող «Քրոնիկոն» խորագիրը։ Մեծանուն գիտնականի ուշադրությունից, սակայն, այս անգամ էլ վրիպել է այն փաստը, որ միջնադարում (ինչպես նաև այսօր) սովորություն է եղել ձեռագիր ժողովածուները կոչել նրանցում ընդգրկված երկերից ամենանշանավորի կամ առաջինի անվամբ։ Այսպես օրինակ, հենց Շիրա-

28 Ցուցակը կազմվել է 1689—1704 թթ. ընթացքում (տե՛ս մեր հոդվածը, «Բանբեր Մատենադարանի», № 10, 1971, էջ 449)։

29 Մաշտոցի անվան մատենադարան, ձեռ. № 373, էջ 227ա։

30 Անդ, էջ 231բ։ Ամրդոլու վանքի մատենադարանի «Քննիկոնի» երկու օրինակները Ա. Մաթևոսյանի ենթադրությամբ «հավանաբար Քննիկոնի տարբեր մասեր են, այլապես Վարդան վարդապետը սովորության համաձայն կդրեր «Բ Քննիկոն», ինչպես օրինակ «Բ Միխայէլի պատմագիրք» (ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր», հաս. գիտ., 1974, № 7, էջ 73)։ Սակայն Վարդանը ձեռագրաց ցուցակում ձեռագրերը խմբավորել է ըստ նրանց մատենագրական տեսակների, այդ իսկ պատճառով երկու Քննիկոնը միասին գրանցել չէր կարող։ Քննիկոններից մեկն ընդօրինակված է եղել այլ բնույթի, մյուսն էլ մեկ այլ բնույթի պատկանող ձեռագրերի կազմում։

31 Hippolytus Werke, էջ 426։

32 Անդ, էջ 427—428։

կացու երկը պարունակած մի ձեռագիր Բաղեշի Ամրդոլու վանքի ձեռագրաց ցուցակում գրանցված է ոչ թե «Քննիկոն», այլ «Բառգիրք» խորագրով: Հիշենք մեզ արդեն ծանոթ այդ գրանցումը. «Ա/=1/ գիրք ոսկով. Բառգիրքն է սուրբ Յով[հաննե]սին, որ է Անանիա Շիրակացւոյն, որ է Քննիկոն»: Այս «Քննիկոնի» մեկ այլ ընդօրինակությունն Ամրդոլու վանքում հանդիսացել է ձեռագրի գլխավոր երկը և ամբողջ ձեռագրին տվել է իր անունը. «Ա գիրք Անանիայի Քննիկոն և բազում ասացուածք վարդապետաց և մեկնութիւնք անծանօթք»[33]: Մաշտոցի անվան մատենադարանում պահվող № 2639 ձեռագիր ժողովածուն թեև իր մեջ կրում է յոթ պատմիչների երկեր, սակայն Բաղեշի Ամրդոլու վանքում գտնված ժամանակ կոչվել է միայն Մովսես Խորենացու անվամբ. «Մեկ **Մովսէս պատմագիրք**, որ կայ ի մէջ է /=7/ պատմագիրք՝ Ագաթանգեղ, Մովսէս, Եղիշէ, Ներսէսի պատմութիւն, Ղազարու Փարպեցոյ և Խոսրովու»[34]:

Ոչ միայն տարբեր հեղինակների, այլև միևնույն հեղինակի երկերը պարունակող ժողովածուները նույնպես որոշակի դեպքերում կարող էին կրել այդ հեղինակի երկերից միայն մեկի անունը: Այդպես է կոչվում, օրինակ, Գրիգոր Նարեկացու «Առ որս» ժողովածուն, որում զետեղված առաջին երկն սկսվում է «Առ որս» բառերով. «Առ որս բանիւ են պաճուճեալ բանքս» («Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», հ. Ա, էջ 9):

«Քննիկոն» բառով գրավված բոլոր բառարանագիրներն այդ բառը գրանցել են «քրոնիկոն» նշանակությամբ[35]: Սա այնքան հանրահայտ փաստ է, որ վկայակոչումների կարիք չունի: Այնպես, որ Մարկվարտը պետք է պարզապես հիշեր ժողովածուները միայն մեկ երկի խորագրով կոչելու սովորությունը և, հետևելով բառարանագիրներին, ընդուներ, որ Մագիստրոսի նամակի վերնագրի մեջ հանդիպող «քննիկոնը» նույն «քրոնիկոնն» է: Շիրակացին ինքը կամ ուրիշները ժողովածուն կոչել են այդ բառով, որի փոխարեն Ջատկի ճառում հանդիպում է հայկական տարբերակը՝ «ժամանակական կանոն»: Եվսեբիոս Կեսարացու Ժամանակագրությունը նույնպես կոչվել է մերթ «Քրոնիկոն», մերթ՝ «Ժամանակական կանոն»: Հայերեն թարգմանությունում Կեսարացին երբեմն էլ «քրոնիկոն» և «ժամանակական կանոն» արտահայտությունները գործածում է միասին. «...ի քրոնիկոն ժամանակական կանոնսն փոխեցայց»[36]:

Մագիստրոսի հաղորդման համաձայն՝ Շիրակացու երկերի ժողովածուն բաղկացած է եղել ոչ թե քննական, հետազոտական բնույթի գրվածքներից, այլ տարբեր աղբյուրներից քաղված նյութերից: Հետևաբար այն չէր կարող կոչվել «քննել» բառից բխող ինչ-որ անվամբ: Իսկ «Քրոնիկոն» անունը շատ

---

33 Անդ, էջ 231 բ: «Մեկնութիւնք անծանօթք»-ի մասին տե՛ս մեր հոդվածը («Բանբեր Մատենադարանի», № 10, էջ 451):

34 Այս գրանցման մասին տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 10, էջ 450—455:

35 Մագիստրոսի նամակում «Քննիկոնը» հիշատակված է այնպես, որ կարող է ընկալվել նաև որպես ոչ թե ժողովածուն, այլ Շիրակացուն ներկայացնող բառ. «...Շիրակայնոյն, զոր Մեծ Քննիկոնն անուանեն»: Վ. Լանգլուան, հավանաբար, միաժամանակ ծանոթ լինելով նաև Հովհաննես Սարկավագի, Սամվել Անեցու, Կիրակոս Գանձակեցու և այլոց աշխատություններին, որոնցում Շիրակացին մեծարվում է «Մեծ» տիտղոսով («մեծ վարդապետ»), Մագիստրոսի «մեծ քննիկոնը» հասկացել է «մեծ ժամանակագիր», ընդունելով որպես Շիրակացուն մեծարող արտահայտություն: Տե՛ս V. Langlois, Mémoire sur la vie et les écrites du prince Grégoire Magistros.— „Journal Asiatique", 1869, janvier, p. 37.

36 Եվսեբիոս Կեսարացի, Ժամանակականք երկմասնեայ, մասն Ա, Վենետիկ, 1818, էջ 9:

ընական պետք է լիներ, որովհետև Շիրակացու տոմարական աշխատությունը հանդիսացել է ժողովածուի գլխավոր երկը։

Մենք քիչ հետո ցույց կտանք, թե գրչական ինչ ճանապարհ է անցել «Քրոնիկոնը», մինչև որ աղճատվելով դարձել է «Քննիկոն», իսկ այժմ հիշենք, որ «Քննիկոնը» աղճատված բառ չի համարում նաև Ա. Մաթևոսյանը։ Նա վկայակոչել է Ասողիկի ձեռագրերը, որոնցում ամենուրեք գրված է «Քննիկոն»[37]։ Սակայն հայտնի է, որ ամենահին ձեռագիրը (2865), ընդօրինակված է Ասողիկից երեք դար հետո և զերծ չէ նաև այլ փոփոխություններից։

Մաթևոսյանը միաժամանակ գտնում է, որ հնարավոր չէ «Քրոնիկոնից» ստանալ «Քննիկոն»։ Նա գրում է. «Որպեսզի **Քրոնիկոնը Քննիկոն** դառնա, «քրանիկոն» բառի «րա» տառակապակցությունը պետք է «փոխվի» ն-ի, որ հնարավոր չէ»[38]։ Բայց ձեռագրական աշխարհին քաջ ծանոթ իմ գործընկերոջը հայտնի է, որ գրիչները բառերն արտագրում են երբեմն աներևակայելի աղճատումներով, որոնց կողքին «Քրոնիկոն»—«Քննիկոն» անցումը անսպասելի չէ։ Բավական է, որ «Քրոնիկոնը»[39] գրված լիներ երկու տառի («րո») սղմամբ՝ կստացվեր «քնիկոն», որն էլ իր հերթին հեշտությամբ կդառնար «Քննիկոն»։ Մաթևոսյանն ինքը չի բացառում տառերի սղմամբ նոր բառեր ստանալու հնարավորությունը։ Նա գրում է. «**Քննիկոնն** առաջացել է **Քանոնիկոն** բառի առաջին երկու ձայնավորների սղմամբ»[40]։

Ինչպես Նոր Հայկազյան բառարանում, այնպես էլ Հ. Աճառյանի Արմատական բառարանում և առհասարակ հայերենում «քանոնական», «քանոնիկոն» բառերի նշանակությունն այնպիսին է («ըստ ուղղութեան քանոնի»[41], «քանոնով քաշված ուղիղ»[42]), որ չի համապատասխանում Գրիգոր Մագիստրոսի նամակում Շիրակացու ժողովածուի մասին հայտնված տեղեկություններին և չի կարող ընդունվել որպես որևէ գրքի խորագիր[43] (Շիրակացին հազիվ թե իր գիրքը համեմատեր քանոնով քաշված գծի հետ)։

Այժմ տեսնենք, թե ինչպես է «քրոնիկոն» բառը դարձել «քննիկոն»։ Նախ ասենք, որ Հ. Աճառյանը բառի աղճատումը դիտել է որպես հնչյունական փոփոխման արդյունք. «**Քրոնիկոն**... յետին հնչումով՝ **Քննիկոն**»[44]։ Մեր կարծիքով, սակայն, փոփոխությունն ընթացել է գրավոր ճանապարհով։ Ձեռագիր

---

37 **Ա. Ս. Մաթևոսյան**, Անանիա Շիրակացու «Քննիկոնը», ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր հասարակական գիտությունների», 1974, № 7, էջ 69—70։ Համտ. նաև՝ **Ա. Ս. Մաթևոսյան**, Նորից Շիրակացու Քննիկոնի մասին, «Պատմա-բանասիրական հանդես», 1981, 2, էջ 224—225։

38 Անդ, էջ 77։

39 **Ա.** Մաթևոսյանը նշել է «Քրանիկոն» ձևը, սակայն ձեռագրերում ավելի հաճախ հանդիպում է «Քրոնիկոն» (Քրօնիկոն), որն ավելի հեշտությամբ կվերածվեր «Քննիկոնի»։

40 **Ա. Մաթևոսյան**, նշվ. աշխ., էջ 77։

41 «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», հ. 2, էջ 980։

42 **Հ. Աճառյան**, Հայերեն արմատական բառարան, հ. 4, Երևան, 1979, էջ 552։

43 Անանիա Շիրակացու երկերի ժողովածուի («Քրոնիկոնի» կամ «Քննիկոնի») բովանդակության մանրամասնությունների, նրա նպատակի, գործածության, ինչպես նաև Գրիգոր Մագիստրոսի նամակի վերծանության մասին մեր կարծիքը տարբերվում է Յ. Մարկվարտի, Ա. Մաթևոսյանի և Գ. Պետրոսյանի կարծիքներից, որոնց մենք չենք անդրադառնում։ Այսօրվա մեր նպատակը Շիրակացու գլուխգործոցի խորագիրը և «քննիկոն»—«քրոնիկոն» բառերի հարաբերությունը որոշելն է։

44 **Հ. Աճառյան**, նշվ. աշխ., հ. 4, էջ 601։

ընդօրինակող գրիչները ճիշտ չեն ընդօրինակել «քրոնիկոն» բառը, որի հետևանքով առաջացել է «քննիկոնը»։

Դիմենք բառը պարունակող ամենահին գրավոր հուշարձանին՝ Թղթյա հազարամյա ձեռագրին։ Ճիշտ է, «քրոնիկոն» բառը հայերենում գործածվել է դեռևս V—VI դարերում, Եվսեբիոս Կեսարացու «Քրոնիկոնի» հայերեն թարգմանությունում, սակայն մեզ չի հասել նշված դարերից ոչ մի ձեռագիր։ Հետևաբար պետք է դիմենք 981 թ. ընդօրինակված Թղթյա ձեռագրին։

Այստեղ «քրոնիկոն» բառը գործածված ենք գտնում Շիրակացուն վերագրված ժամանակագրության «Կայսերաց գրքի» բաժնում. «Ըստ Հրէից՝ մինչեւ ի ծնունդն՝ ամք Տ/=4000/, ըստ Շամրտացւոց՝ Տ, ըստ Յունաց Եպիփանու Կիպրացւոյ Պատմութեանն ՐՇ/=5500/, ըստ Քրիկոնի (sic!) բազմավրէպ[45] (sic!) պատմութեանն՝ ՐՃՂԸ/=5198/»[46]։ Ինչպես տեսնում ենք, «Քրոնիկոն» բառի ամենահին գրանցումը մեզ է հասել երկու տառի աղավաղմամբ, «Քրիկոն» ձևով։ Սղված են «ոն» տառերը։ Միևնույն աղավաղման է ենթարկվել նաև Սամվել Անեցու ժամանակագրության ընդօրինակություններից մեկը, որում կարդում ենք, «Անտի մինչև ի ծնունդն Քրիստոսի և ապա ըստ «քրիկոնին» գաւազանօր գրաւեսցուք... ի ներկայս»[47]։ Բավական է, որ «ոն»-ի փոխարեն աղվեին «րո» տառերը, կստացվեր «քնիկոն», իսկ սա, ինչպես ասվեց, հեշտությամբ կըվերածվեր «քննիկոնի»։ Որ դա այդպես է եղել, այդ մասին վկայում է Ուխտանեսի «Հայոց պատմության» մեզ հասած միակ ձեռագիրը, որում նույնությամբ կարդում ենք այն, ինչ քիչ առաջ քաղեցինք Թղթյա հնագույն ձեռագրից։ Այսպես. «Ըստ հրէիցն մինչ ի ծնունդն Քրիստոսի՝ չորս հազար ամք, և ըստ Շմրտացւոյն՝ չորս հազար, իսկ ըստ Յունաց Եպիփանու Կիպրացւոյ Պատմութեանն հինգ հազար հինգ հարիւր ամ, և ըստ ՔՆՆԻԿՈՆԻՆ բազմավէպ պատմութեան հինգ հազար հարիւր իննսուն և երկու»[48]։ Բառացի արտագրված է Թղթյա ձեռագրում գրանցված տեղեկությունը։ Միակ տարբերությունն այն է, որ այս անգամ «Քրոնիկոնին» փոխարինում է «ՔՆՆԻԿՈՆը»։ Եթե մտածենք, որ Ուխտանեսի հեղինակային օրինակում նույնպես եղել է «Քննիկոն», պետք է ընդունենք, որ անցումը «քրոնիկոնից» «քննիկոնին» տեղի է ունեցել դեռևս X դարում։

Սույն բառերի փոխարինաբար գործածությունը հետագա դարերում դառնում է ավելի հաճախակի։ Այդ մասին վկայող օրինակները բերելուց առաջ, քանի դեռ Ուխտանեսից չենք հեռացել, փորձենք գտնել «Քրոնիկոն (կամ «Քննիկոն») բազմավէպ պատմութիւնը», որը վկայակոչված է Թղթյա ձեռագրում և Ուխտանեսի երկում։ «Բազմավէպ» բառը հայ մատենագրության մեջ բազմիցս օգտագործված է որևէ երկի բազմակողմանիությունը ցույց տալու համար։ Բառն օգտագործել է նաև ինքը՝ Շիրակացին. «... ի բազմավէպ

45 «Բազմավէպ»-ի փոխարեն գրված «Բազմավրէպ»-ը մատնում է գրչի անուշադրությունը, որի արդյունք է նաև «Քրոնիկոնին» փոխարինող «Քրիկոնը»։

46 Մատենադարան, ձեռ. № 2679, թ. 50ա, տ. 18—19. Հմմտ. Շիրակացու մատենագրությունը, էջ 379։

47 Սամուել Անեցի. Հավաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 4։

48 Ուխտանես. Պատմութիւն Հայոց, հ. Ա, Վաղարշապատ, 1871, էջ 44։ Հմմտ. նաև էջ 33։ Հայկական մյուս աղբյուրները (Թղթյա հնագույն ձեռագիր, Հովհաննես Սարկավագ, Սամվել Անեցի և այլք) բոլորը նշում են ՐՃՂԸ (5198), որից երևում է, որ Ուխտանեսի ձեռագրում «Ը»-ն սխալմամբ կարդացվել է «Բ»։

պատմութենէն Պապայ Աղեքսանդրացւոյ»[49]։ Գրիգոր Մագիստրոսը հայտնում է, որ Շիրակացին «Քննիկոն» ժողովածուում նյութեր էր հավաքել «ի բազմավէպ[50] մատենագրից Քաղդեացւոց»։ Միևնույն Մագիստրոսը «Քննիկոնը» կոչում է նաև «Մեծ Քննիկոն», որը հիշեցնում է Ասողիկի «Հրաշագան Քննիկոնը»։ Տեղեկությունների այս միջավայրում հավանականությունից շատ հեռու չէր լինի այն ենթադրությունը, որ Թղթյա ձեռագրում և Ուխտանեսի երկում նշված վերոհիշյալ «Քրոնիկոն (Քննիկոն) բազմավէպ պատմութիւն» արտահայտությամբ նկատի է առնված միևնույն «Մեծ Քննիկոնը» կամ «Հրաշագան Քննիկոնը», որում Ադամից մինչև Քրիստոսի ծնունդն ընկած տարիների գումարը նշված է եղել ԲՃՂԸ (5198) տարի։

Մեր ենթադրությունը ավելի հավանական է դարձնում (եթե ոչ՝ հաստատում) Հովհաննես Սարկավագը, որը տարիների նույն գումարը նշում է որոշակիորեն Անանիա Շիրակացու անունը տալով. «ՅԱդամայ մինչև Հայ թուականն... ըստ Անանիայ Շիրակունւոյ՝ ԲՃՂԸ»[51]։ Ճի՛շտ է, Սարկավագն այդ գումարը նշում է ոչ թե Ադամից մինչև Քրիստոսը, այլ Ադամից մինչև Հայ թվականն ընկած ժամանակաշրջանի համար, բայց, ինչպես ցույց կտանք ստորև, դա պարզապես անուշադրության հետևանք է։

Սարկավագն իր մեկ այլ աշխատությունում միևնույն գումարը նշում է այն իմաստով, ինչ Թղթյա հին ձեռագիրը և Ուխտանեսը։ Նկատի ունենք «Պատճեն տումարի» խորագրով հրատարակված աշխատությունը։ Հայտնի է, որ Սարկավագի անվամբ հրապարակված որոշ երկեր մեծ մասամբ արտագրված են Շիրակացուց։ Այսպես օրինակ, «Պատմութիւն սրբոյ զատկին» խորագրի տակ հրապարակված նյութը գրեթե ամբողջությամբ արտագրված է Շիրակացու «Ի զատիկն Տեառն» ճառից[52]։ Մեզ թվում է, Սարկավագի անվամբ տպագրված «Պատճեն տումարում» հայտնվող տեղեկությունները նույնպես Շիրակացունն են. «ՅԱդամայ ի ծնունդն Քրիստոսի ԲՃՂԸ ամ է»[53]։ Նույնն է Սարկավագի նաև մեկ այլ էջում (127). «Ադամայ մինչև ի... ծնունդն Քրիստոսի... միանգամայն ԲՃՂԸ»։ Այս գումարը վկայակոչված է նաև Սամվել Անեցու Ժամանակագրությունում[54]։

Ինչ վերաբերում է Սարկավագի այն տվյալին, որի համաձայն Շիրակացին ԲՃՂԸ-ն նշել է որպես Ադամից մինչև հայոց թվականն ընկած տարիների

---

49 Շիրակացու Մատենագրությունը, էջ 356։

50 Մատենադարան, ձեռ. № 3062, էջ 247բ—248ա։ Տպագիր հրատարակությունում «բազմավէպ»-ի փոխարեն տպագրված է «բազմավէտ»։

51 Հովհաննես Իմաստասեր, էջ 224։

52 Հմմտ. Հովհաննես Իմաստասեր, էջ 270—275 և Շիրակացու Մատենագրությունը, էջ 292—299։

53 Հովհաննես Իմաստասեր, էջ 205։

54 Սամվել Անեցի, էջ 51։ Այստեղ կարդում ենք. «Սկսեալ ի նախաստեղծ մարդոյն (Ադամից մինչև Քրիստոս—Գ. Ա.) յորս ժողովին ամք ԲՃՂԸ. ըստ Եօթանասնիցն թարգմանութեան...»։ Ընդգծվածից երևում է, որ Սամվել Անեցու աղբյուրում «ԲՃՂԸ»-ն ներկայացված է եղել որպես Աստվածաշնչի վրա հիմնված ստույգ հաշվարկում։ Նույնն է նաև Գրիգոր Տաթևացու Հարցմանց գրքում. «ըստ Եօթանասնիցն՝ ԲՃՂԸ ամ» (Գիրք Հարցմանց, էջ 451)։ Սամվել Անեցին մեկ այլ էջում (14—15) գրում է. «Դարձեալ ի նոյն գրոց՝ յԱրարածոց», նկատի ունենալով Աստվածաշունչը, սակայն, իրականում նա օգտվում է Անանիա Շիրակացուն վերագրված ժամանակագրությունից (տե՛ս Շիրակացու Մատենագրությունը, էջ 360)։

գումար, ապա այդ սխալը բացահայտվում է Գրիգոր Տաթևացու հետևյալ վկայությամբ. «Ի յԱդամայ մինչ ի ծնունդն Քրիստոսի է ըստ... Եօթանասնից ՐՃՂԸ ամ։ Եւ ըստ Անանիա Շիրակացւոյ՝ յԱդամայ ի թուականն Հայոց են ամք ՐԹՃՀԶ (5976)»[55]։ Ինչպես տեսնում ենք, Տաթևացին ՐՃՂԸ գումարը որոշակիորեն զանազանում է Շիրակացու նշած՝ Ադամից մինչև Հայոց թվականն ընկած տարիների գումարից։ Տաթևացու նշած թվերը դժբախտաբար աղճատված են, սակայն ներկա դեպքում կարևորն այն է, որ Տաթևացին Շիրակացու նշած Ադամից մինչև Հայոց թվականը տարբերում է Ադամից մինչև Քրիստոսը թվականից։

Թղթյա ձեռագրում և Օխտանեսի գրքում հիշատակվող «բազմավէպ պատմությունը» Ասողիկի և Մագիստրոսի հիշատակած «Հրաշալան Քրոնիկոնի» և «Մեծ Քննիկոնի» հետ նույնացնելուն նպաստում է նաև Գրիգոր Տղան։ Նա Գրիգոր Տուտեորդուն ուղղած նամակում Անանիա Շիրակացու գիրքը նշում է «բազմավէպ» բառով. «Իսկ առ այս (տոմարի և ժամանակագրության մասին -Գ. Ա.) Անանիա և Անդրէաս բազմավէպ գրութեամբ ճառեցին»[56]։ Ինչպես երևում է, Գրիգոր Տղայի օգտագործած ձեռագրում առկա է եղել նաև Անանիա Շիրակացու ինքնակենսագրությունը, որի մասին է վկայում Գրիգորի խոսքի շարունակությունը. «Որպէս և պատմէ նոյն ինքն Անանիա յաղագս անբարեհէր ազգիս տրտնջմամբ, առ որս ոչ պատուի գիտութիւն»[57]։ Այս խոսքն արձագանքն է Շիրակացու ինքնակենսագրության «ոչ սիրաւղ իսկ է ազգ մեր իմաստից և գիտութեանց» մտքի[58]։

Վերադառնանք «քրոնիկոն» և «քննիկոն» բառերի նույնությանը հաստատող սկզբնաղբյուրներին։ XII դարում ապրած Սամվել Անեցին գրում է. «Ըստ քրոնիկոնին գաւազանաց գրաւեցուք»[59], իսկ XVIII դարում կազմված «Պատմագիրք Հայոց» կոչվող ցանկի հեղինակը Սամվելի խոսքը փոխում է և «քրոնիկոնի» փոխարեն գրում է «քննիկոն». «Սամուէլ երեց, որ արար զՔննիկոնն գաւազանագիրքն»[60]։ Նույն Անեցին Եվսեբիոս Կեսարացու «Քրոնիկոնը» կոչում է, բնականաբար, «Քրոնիկոն» և, հասկանալի է, որ այդպես պետք է կոչեր նաև XIII դարի մեծ գիտնական Վանական վարդապետը, սակայն Վանականի «Հարցմունք և պատասխանիք» գիրքն ընդօրինակող գրիչները գրում են. «Զեկեղեցական պատմութիւնն և զՔննիկոնն նա (Եվսեբիոս Կեսարացին—Գ. Ա.) արար»[61]։ XIII դարի մատենագիր Վարդան Արևելցին Սամվել Անեցու «Քրոնիկոնը» կոչում է այնպես, ինչպես կոչել է հեղինակը, բայց Վարդանի «Տիեզերական պատմության» գրիչներից մեկը նրա նշած «Քրոնիկոնը» դարձյալ փոխում է «Քննիկոնի». «զգաւազանսն յօրինեաց Քննիկոնին Անեցին»[62]։ Նույն դարում Գլաձորի համալսարանի տնօրեն Եսայի Նչեցին Կյուրեղ Աղեք-

---

55 Գրիգոր Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 451։

56 «Գրիգոր կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ նամականի», Վենետիկ, 1838, էջ 23։ Հմմտ. Մատենադարան, ձեռ. № 3062, էջ 61բ։

57 Անդ։

58 Շիրակացու մատենագրությունը, էջ 208—209։

59 Սամվել Անեցի, էջ 4։

60 Մատենադարան, ձեռ. № 2220, էջ 292, № 2271, էջ 214։ Հմմտ. Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հ. 1, էջ 55 (առաջաբան)։

61 Մատենադարան, ձեռ. № 3074, էջ 98ա, ձ. № 1254, էջ 40բ և այլ ձեռագրեր։

62 Վարդան Արևելցի, Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1861, էջ 159։

սանդրացուն վկայակոչելիս գրում է «Քրոնիկոն», նկատի ունենալով Կյուրեղի վկայակոչած Եվսեբիոս Կեսարացու Քրոնիկոնի առաջին գիրքը («Կորովամիտն Կիւրեղ Աղեքսանդրացի գրէ այսպէս. եթէ՝ Բազում անգամ յուզեցի ի Քրոնիկոնն»)[63], իսկ Մաշտոցի անվան Մատենադարանի № 5254 ձեռագրի գրիչը Կյուրեղ Աղեքսանդրացու վկայակոչած Եվսեբիոսի «Քրոնիկոնը» դարձնում է «Քննիկոն». «Իսկ ես յառաջին Քննիկոնէն խնդրել գտի ոչ Լ/30/ամ յոբելեանին, այլ Ե/5/ ամ գերութեանն Յովակիմայ»[64]։ Բաղեշի սուրբ Հովհաննես վանքում ընդօրինակված Շիրակացու երկը կոչվել է «Քրոնիկոն» («Արդ գրեցաւ Քրոնիկոնս»[65]), իսկ նույն վանքի անունը կրող մեկ այլ ձեռագիր (կամ միևնույն ձեռագիրը) Վարդան Բաղիշեցու ցուցակում գրանցված է «Քննիկոն» անվամբ. «Ոսկով բառգիրքն է սուրբ Հովհաննէսին, որ է Անանիա Շիրակացւոյն, որ է Քննիկոն»[66]։

Այսպես կարելի է անընդհատ շարունակել թվարկումը «քրոնիկոն» և «քննիկոն» բառերի նույնությունը ցույց տվող հուշարձանների, որոնք մի ավելորդ անգամ գալիս են ապացուցելու, որ հայերենում «քննիկոն» բառը չունի ոչ մի այլ նշանակություն, քան այն, ինչ գրանցել են Մխիթարյան բազմահմուտ գիտնականները Նոր Հայկազյան բառարանում[67]։ Այնպես որ պետք է առանց վարանելու ընդունել, որ «քննիկոնը» նույն «քրոնիկոնն» է և չզարմանալ, որ այդպես են ընդունել ոչ միայն բառարանագիրները, այլև բոլոր այն գիտնականները, ովքեր երբևէ առիթ են ունեցել զբաղվելու այդ բառով և քաջ ծանոթ են եղել բառի ամենաբազմազան իմաստներին։

Վ. Լանգլուայի օգտագործած ձեռագրում Մագիստրոսի նամակի «Քննիկոնի» փոխարեն գրված է «Քննոկոն»[68], որից երևում է, որ գրիչը մտովի հիշել է «Քրոնիկոն» բառը, կրկնելով նրա «ո» տառը։ Հակառակ մտածողությամբ է առաջնորդվել մեր Մատենադարանի № 5566 ձեռագրի գրիչը, որը գրել է «Քրինիկոն» (էջ 66բ), որում կրկնված է «Քննիկոնի» «ի»-ն։ Ձեռագրական աշխարհում այսպես աննկատ ձուլվել և միահյուսվել են «քրոնիկոնն» ու «քննիկոնը»։

Մեր հիշատակած մատենագիրների հաղորդած տեղեկություններից երևում է, որ «քրոնիկոն» կամ «քննիկոն» ասելով նրանք հասկացել են մերթ

---

63 Մատենադարան, ձեռ. № 5566, էջ 8ա։ Համա. ձ. № 1241, էջ 7բ։

64 Մատենադարան, ձեռ. № 5254, էջ 59ա։ Համա. Եվսեբիոս Կեսարացի, Ժամանակականք երկմասնեայ, մասն Ա, Վենետիկ, 1818, էջ 187. «Ոչ յաւերածոյ տաճարին համարեալ զգերութեանն ժամանակս (այսինքն՝ «ոչ Լ=30 ամ յոբելեանին»—Գ. Ա), այլ եւ՝ ի վերուստ, յերկրորդ (Կյուրեղ Աղեքսանդրացու օգտագործած Քրոնիկոնի ձեռագրում եղել է «ի հինգերորդ»—Գ. Ա.) ամէն Յովակիմայ։

65 Տե՛ս Ա. Մաթևոսյան, Անանիա Շիրակացու «Քննիկոնը» (ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր», 1974, № 7, էջ 74)։

66 Տե՛ս վերը։

67 Հայկազյան բառարանի գիտնական հեղինակները, հենվելով հայ դարավոր մատենագրության փորձի վրա, «քննիկոն» բառը նույնացրել են «քրոնիկոնի» հետ և բառարանում գրանցել են այդ իմաստով. «Քննիկոն. փոխանակ գրելոյ «Քրոնիկոն» (էջ 1009)։

68 Langlois V., նշվ. աշխ., էջ 37։ Վիեննայի Մխիթարյան մատենադարանում պահվող ձեռագրում՝ «Քնոկոն» (տե՛ս Տաշյան Հ., Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, 1895, էջ 153)։ Անտոնյան մատենադարանի ձեռագրում՝ «Քննոկոն» («Հանդէս ամսօրեայ», 1909, էջ 110)։ Հայտնի են նույն ընթերցվածքն ունեցող նաև այլ ձեռագրեր։

Շիրակացու երկերի ժողովածուն, մերթ ժողովածուի գլխավոր երկը, մերթ՝ առհասարակ այն, ինչ գրանցված է բառարաններում այդ բառերի դիմաց։ Սակայն մատենագիրներից ոչ ոք իր աղբյուրը նշելիս չի բերում որևէ այնպիսի տեղեկություն, որը մենք այսօր գտնեինք Շիրակացու մեզ հասած երկերում։ Այս փաստը միանալով Հորդանանն անցնելու և Եգիպտոսից դուրս գալու մասին Շիրակացու և Ասողիկի հաղորդած տեղեկություններին, ցույց է տալիս, որ մատենագիրների օգտագործած աղբյուրները մեզ չեն հասել։ Մեր սույն հոդվածի գլխավոր նպատակը հենց այդ փաստի բացահայտումն էր. մի փաստ, որով հերքվում են Թղթյա ձեռագրում ընդօրինակված ժամանակագրությունը Շիրակացու Զատկի ճառում հիշատակվող «Ժամանակական կանոնի» (Քրոնիկոնի) հետ նույնացնելու նպատակով գիտական շրջանառության մեջ դրված փաստարկներն ու տեսակետները։

* * *

Նույնացման հերքումը, սակայն, դեռևս չի նշանակում, թե ժամանակագրության հեղինակը Շիրակացին չէ։ Տեսականորեն հնարավոր է, որ հայ մեծ հանրագետը գրած լիներ և՛ Զատկի ճառում հիշատակվող «Ժամանակական կանոնը», և՛ Թղթյա ձեռագրում պահպանված ժամանակագրությունը։ Արդեն ասվեց, որ մասնագետների մեծ մասն այդ ժամանակագրությունը վերագրել է Շիրակացուն։ Բացառություն են կազմում Գ. Խալաթյանցը, Բ. Սարգիսյանը, Յ. Մարկվարտը և Հ. Բարթիկյանը։ Սրանցից առաջին երեքը ժամանակագրության երկրորդ կեսը՝ «Կայսերաց գիրքը» անջատել են նախորդ հատվածներից և վերագրել Թղթյա ձեռագրի պատվիրատու Դավիթ քահանային (Գ. Խալաթյանց)[69], Փիլոքսենին կամ «մի այլ միաբանաւ ասորու մը» (Բ. Սարգիսյան)[70], Շիրակացուն (Յ. Մարկվարտ)[71], իսկ Հ. Բարթիկյանն ամբողջ ժամանակագրության հեղինակ է համարել Փիլոն Տիրակացուն[72]։

Այս վերջին ենթադրության համար հիմք է ծառայել № 5254 ձեռագրում համառոտագրված միևնույն ժամանակագրության «Խօսք Փիլոնի» խորագիրը։ Ն. Ակինյանը, Լ. Խաչիկյանը, Ա. Աբրահամյանը, Հ. Անասյանը և ուրիշներ № 5254 ձեռագիրն ուսումնասիրելիս Փիլոնի անունը նկատելով ու նշելով հանդերձ կարևորություն չեն տվել դրան և շարունակել են ժամանակագրությունը վերագրել Շիրակացուն։ Իսկ Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագրաց ցուցակի հեղինակները Փիլոնի անունն առհասարակ չեն նշել և ժամանակագրությունը գրանցել են որպես «Ան. Շիրակացւոյ ժամանակական կանոնք»[73]։ Նրանք ձեռագիրն ուսումնասիրելիս տեսել են, որ «Խօսք Փիլոնի» ծանոթագրությունը ժամանակագրության վերնագիրը չէ, այլ այնպիսի մի ծանոթագրություն, ինչպիսին է «Մովսէսի Խորենացւոյ և Անդրէասի» ծանո-

---

69 Гр. Халатянц, Армянский эпос в Истории Моисея Хоренского, ч. I. М., 1903, с. 54.

70 «Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», հ. Բ, էջ 444։

71 Hippolytus Werke, էջ 413—435։

72 Հրաչ Բարթիկյան, Անանիա Շիրակացուն վերագրվող «Ժամանակագրության» և նրա բանաքաղի հարցի շուրջը, «Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 72—76։

73 «Ցուցակ ձեռագրաց Մաշտոցի անվան Մատենադարանի», հ. Բ, կազմեցին Օ. Եգանյան, Ա. Զեյթունյան, Փ. Անթաբյան։ Խմբագրությամբ Լ. Խաչիկյանի, Ա. Մնացականյանի, Երևան, 1970, էջ 68։

թագրությունը Թղթյա ձեռագրի ժամանակագրության սկզբում[74]։ Դրանք վերաբերում են ժամանակագրության միայն մեկական փոքրիկ հատվածների և իրենց նման «վերնագրեր» ունեն ժամանակագրության նաև այլ հատվածներում։ № 5254 ձեռագրում, օրինակ, կա «Խոսք Փիլոնի» նման մեկ այլ վերնագիր. «Արիգենոս պատմագրի» (էջ 196 ա)։

Թղթյա ձեռագրի համար նախագաղափար հանդիսացած օրինակում ժամանակագրության սկիզբը պակաս է եղել, և ժողովածուն կազմողն ինքն է լրացրել պակասը[75], քաղելով Խորենացուց և Անդրեասից։ Այս դեպքում Հայոց Պատմահոր և Անդրեասի անունները պարունակող ծանոթագրության ներկայությունը Թղթյա ձեռագրում հասկանալի է։ Այլ է վիճակը № 5254 ձեռագրում։ Այստեղ Փիլոնի անվան փոխարեն պետք է լիներ Հիպողիտոսի անունը, որովհետև ժամանակագրությունն սկսվում է Հիպողիտոսի երկի թարգմանությամբ։

Եթե ժամանակագրությունը վերաբերեր ավելի հին ժամանակների՝ կարելի կլիներ առանց վարանելու ընդունել, որ «Խոսք Փիլոնի» վերնագրում ակնարկված է հանրահայտ Փիլոն Եբրայեցին, մանավանդ, որ № 5254 ձեռագրում, ժամանակագրության մեկ այլ հատվածում Փիլոնը Հովսեպոս Փլավիոս պատմիչի հետ միասին հիշատակվում է հենց որպես ժամանակագիր. «Յովսէպոս պատմագիր, Փիլոն ժամանակագիր» (էջ 200 ա)[76]։ Ձեռագրի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վերնագրում, համենայնդեպս, ակնարկված է Փիլոն Եբրայեցին։ Քիչ առաջ ասվեց, որ ժամանակագրության մեջ կա «Խոսք Փիլոնի» վերնագրի նման ևս մեկ վերնագիր. «Արիգենոս պատմագրի»։ Այս վերնագիրը դնողը պարզապես սխալվել է, կարծելով, թե ժամանակագրության տվյալ հատվածը Արիգենոսինն է։ Ճիշտ այդպես էլ նա սխալվել է «Խոսք Փիլոնի» վերնագիրը դնելիս։ Այդ վերնագրի տակ զետեղված հատվածը, ինչպես ասվեց, Հիպողիտոսի ժամանակագրության հատվածն է։

Իսկ որ «Խոսք Փիլոնի» խորագիրը վերաբերում է Փիլոն Եբրայեցուն, այդ մասին է վկայում նաև այն, որ Փիլոնի անունը նշված է առանց մականվան։ Այդպես են նշվում միայն նշանավոր մատենագիրները, և Փիլոնը մեր ձեռագրերում ամենուրեք նշվում է այդպես։ Ինչ վերաբերում է Տիրակացուն, ապա նա մականվամբ պետք է հանդես գար ամենից առաջ հենց № 5254 ձեռագրում, տարբերվելու համար Հովսեպոսի հետ նշված հանրահայտ Փիլոնից։

Փիլոն Տիրակացու մասին հայտնող առաջին պատմիչը Ասողիկն է, որը Տիրակացուն հիշատակում է այնպիսի մի տեղում, որն ինքնըստինքյան պահանջում է հիշատակել ժամանակագրական աշխատությունների հեղինակներին։ Այսքան հարմար մի տեղում, սակայն, նա նշում է Անանիա Շիրակացու «Քննիկոնը», իսկ Տիրակացու անվամբ գրանցում է միայն այն, ինչ իսկապես նրա գրչին է պատկանում՝ Սոկրատ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմության թարգմանությունը. «Իսկ Անաստաս խորհեալ Հայաստանեայցս կարգել տոմար անշարժ ըստ այլոց ազգաց՝ և հրամայէ Անանիայի Շիրակացւոյ կար-

---

Ձեռագրացուցակի հրատարակությունից հետո մեր օրերում լույս տեսնող որոշ աշխատություններում ժամանակագրությունը դեռևս վերագրվում է Փիլոնին։

74 Տիրակացու մատենագրությունը, էջ 357։

75 Hippolytus Werke, էջ 396-397։

76 Հովհաննես Սարկավագը (էջ 241) նույնպես Փիլոնին հիշում է Հովսեպոսի հետ միասին. «Փիլոն և Յովսէպոս և Մովսէս»։

գել զՔննիկոնն հրաշագան... ի սորա աւուրս էր և Փիլոն Տիրակացին, որ զՍոկրատայ Պատմութիւնն թարգմանեաց ի հայ լեզու»[77]։ Պարզ երևում է, որ Տիրակացին միայն Սոկրատի թարգմանիչն է, և՝ ուրիշ ոչինչ։

Միևնույն տեղեկությունը գտնում ենք նաև Վանական Վարդապետի «Հարցմունք և պատասխանիք» աշխատությունում։ Այստեղ հարց է տրվում. «Ո՞վ է Փոքր Սոկրատն[78]»։ Պատասխանվում է. «Փիլոն ասեն Շիրակացի»[79]։ Սույն տեղեկությունն ուշագրավ է ոչ միայն նրանով, որ Տիրակացին դարձյալ հանդես է գալիս միայն որպես Սոկրատի թարգմանիչ, այլև՝ առավել ևս նրանով, որ Փիլոնը կոչված է ոչ թե Տիրակացի, այլ Շիրակացի։ Ըստ որում՝ Վանական Վարդապետը բացահայտ հայտնում է, որ Տիրակացին՝ էր «ի Շիրակ գեղջէ»[80] և հենց դրա համար էլ կոչվում էր Շիրակացի. «վասն այն Շիրակացի են ասել»[81]։ Նույնիսկ այն ձեռագրերում, որոնցում Փիլոնը կոչված է ոչ թե Շիրակացի, այլ Տիրակացի, դարձյալ ծննդավայրը ցույց է տրվում Շիրակը և կրկին հայտնվում է, որ Շիրակում ծնված լինելու պատճառով է նա կոչված Շիրակացի. «Հարցումն. Ով է Փոքր Սոկրատն։ Պատասխանի. Փիլոն ասեն Տրակացի, ի Շիրակ գեղջէ. վասն այն Շիրակացի են յասել[82]»։ Սույն հիշատակությունը պարունակող ձեռագիրն ընդօրինակված է XIII դարում, այսինքն ժամանակակից է Վանական Վարդապետին[83]։

Վանականի հաղորդումը կարևորություն է ստանում նաև այն պատճառով, որ Հայաստանում Տիրակ անունով վայր հայտնի չէ։ Գ. Տեր-Մկրտչյանը մեր Մատենադարանի մի ձեռագրում նշել է այդպիսի մի անուն՝ Շիրակում[84]։ Բայց մեզ հայտնի երկու այլ ձեռագրերում (№ 7050, էջ 174 և № 10236, էջ 131ա) Գ. Տեր-Մկրտչյանի նշած Տիրակը հանդիպում է «տիրակաց» և «տիրակացն» ձևերով. «զքաղաքն զԱնի հանդերձ նահանգաւ, որք Շիրակս և տիրակաց և պահակաց (կամ «պաղակայ», «պաղականացն»)»։ Արիստակես Լաստիվերցին, Մատթեոս Ուռհայեցին, Հովհաննես Կոզեռնը, Վարդան Արևելցին նույնպես խոսում են միևնույն նյութի մասին, բայց Տիրակ անուն չեն նշում։ Այս պայմաններում՝ Վանականի հաղորդումը Փիլոնի շիրակացի լինելու և Շիրակացի կոչվելու մասին կարող է նույնիսկ հուշել այն միտքը, որ Ասողիկի գրքում գործ ունենք երկաթագիր Շ-ի և Տ-ի շփոթի հետևանքով առաջացած Տիրակացի անվան հետ, որի փոխարեն սկզբում եղել է Շիրակացի։ Ասողիկի գրելաձևից էլ այնպես է երևում, որ նա Փիլոնին հիշել է միայն այն բանից հետո, երբ խոսել է մեկ ուրիշ շիրակացու՝ Անանիայի մասին։ Այս Անանիային հիշատակելուց հետո նա մտաբերել է Շիրակ գյուղում ծնված

77 Ասողիկ, էջ 99։

78 Մատենադարան, ձեռ. № 1254, էջ 48բ։

79 Անդ։

80 Անդ։

81 Անդ։

82 Անդ, ձեռ. № 5611, էջ 96ա—96բ։

83 Անկախ ձեռագրերի ընդօրինակման ժամանակից՝ Վանականի երկը պարունակող մեզ հայտնի բոլոր ձեռագրերում (տե՛ս նաև «Հանդես ամսօրյա», 1947, էջ 440) Տիրակացու մասին հայտնվում է «ի Շիրակ գեղջէ, վասն այն Շիրակացի են ասել»։

84 Տե՛ս «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն». Թարգմանեաց Փիլոն Տիրակացի, Վաղարշապատ, 1897, Առաջաբան, էջ 82։

(«ի Շիրակ գեղջէ») Փիլոնին և գրել. «ի սորա աւուրս էր և Փիլոն Շիրակացին»[85]։

Վերադառնանք № 5254 ձեռագրին։ 1280 թ. արտագրություն հանդիսացող այս ժողովածուում պահպանված ժամանակագրությունը քանաքաղված է ոչ թե անմիջապես Թղթյա ձեռագրից, այլ մեկ այլ գաղափար օրինակից։ Դա երևում է երկու ձեռագրերի ընթերցվածքների տարբերություններից։ Թղթյա ձեռագրի ժամանակագրությունն անհամեմատ ավելի արժեքավոր է իր լիակատար բնագրով, իսկ № 5254 ձեռագրում գտնվում է խիստ համառոտագրված մի ժամանակագրություն, որի հեղինակը բնագիրը կրճատելուց բացի երբեմն իր բառերով է վերապատմում նյութը։ Նրան ավելի շատ հետաքրքրել են Հիպողիտոսի ժամանակագրության աստվածաշնչային անձնանունները, և նա կրճատել է աշխարհագրական տեղանունների մեծ մասը։ Հիպողիտյան հատվածի սահմաններից դուրս նույնպես նա կատարել է կրճատումներ և հավելումներ, որոնցում գտնում ենք քաղվածքներ նույնիսկ XIII դարի մատենագիր Վանական Վարդապետից[86]։ Նրա օգտագործած օրինակը երբեմն ունեցել է Թղթյա ձեռագրում պակասող տեղեկություններ Քսերքսեսի, Դարեհի, Պտղոմեոս Հայրասերի, Արկադեոսի և այլ պատմական անձանց և անցքերի մասին։ Սրանք պետք է օգտագործել Թղթյա ձեռագրի ժամանակագրության ապագա հրատարակության ժամանակ[87]։

Տարբերություններով հանդերձ № 5254 ձեռագրի համառոտ ժամանակագրությունն ունի հիմնականում նույն կառուցվածքը (չհաշված «Աբիդենոսի պատմագրի» և «Թագաւորք Արշակունիք Թագաւորեցին Հայաստան աշխարհի» վերնագրերը կրող հատվածները, որոնք Թղթյա ձեռագրում բացակայում են), ինչ որ Թղթյա ձեռագիրը։ Սրանից երևում է, որ նման կառուցվածք ունեցող մի ժամանակագրական ժողովածու գոյություն է ունեցել արդեն մինչև Թղթյա ձեռագիրը (981 թ.)։ Այդ ժողովածուի մի օրինակ գտնվել է Թղթյա ձեռագրի, մեկ այլ օրինակ՝ № 5254 ձեռագրի գրիչների ձեռքին։ Ն. Ակինյանը կարծիք է հայտնել, թե ժողովածուն կազմողը Թղթյա ձեռագրի պատվիրատու և ստացող Դավիթ քահանան է[88], սակայն արդեն ասվեց, որ նախքան Դավիթ քահանան գոյություն է ունեցել նման մի ժողովածու, որը № 5254 ձեռագրի գրիչը համառոտագրել է, կրճատելով բազմաթիվ հատվածներ, որոնց շար-

---

85 Հ. Աճառյանը, նկատի ունենալով Ալիշանին և Զարբհանալյանին, գրում է. «Ոմանք անվանում են Շիրակացի, որ սխալ է» (Հայոց անձնանունների բառարան, հ. 5, Երևան, 1962, էջ 206)։ Մենք մեծանուն հայագետին չենք առարկում, այլ պարզապես ուշադրություն ենք հրավիրում № 1254 ձեռագրի վրա, որում Տիրակացու փոխարեն գրված է Շիրակացի։ Այս նորահայտ փաստը վերը մեր ներկայացրած միջավայրում ձեռք է բերում մասնագետներին ներկայանալու և քննարկման ենթարկվելու իրավունք։

86 «Եւ որ ի սոցանէ՛ ուղղութիւն և գրով վարին, առաջին Եբրայեցիք։ Իսկ Վիրք և Աղուանք ոչ կատարեալ գիր ունին, այլ խզեալ ի Հայոցն (խազել=գծել են ըստ հայոց այբուբենի— Գ. Ա.) որպէս Ասորին և Իսմայելացին յԵբրայեցոյն առին» (էջ 192ա)։ Այլ ձեռագրերում «խզեալ» փոխարեն՝ «խլեալ», «առեալ»։

87 Ձեռագիրը կարող է օգտագործվել նաև Եվսեբիոս Կեսարացու «Քրոնիկոնում» մի երկու բառ լրացնելու կամ ծանոթագրելու համար։ Նկատի ունենք «Աբիդենոսի պատմագրի» խորագրի տակ իրականում Եվսեբիոսից (հ. 1, էջ 40 և 44) քաղված տեղեկությունները։

88 Ն. Ակինյան, Դավիթ քահանայի խմբագրած ժամանակագրությունը, «Հանդես ամսօրյա», 1957, էջ 183։

քում են նաև Թղթյա ձեռագրում «Եւսեբի ժամանակագրի», «Եպիփանոս» և «Պարսից թագաւորքն» խորագրերի տակ զետեղված հատվածները[89]։

Յ. Մարկվարտն արդեն հայտնել է[90], որ Դավիթ քահանայի ներմուծում պետք է համարել միայն «Մովսէսի Խորենացւոյ և Անդրեասի» խորագրի տակ զետեղված հատվածը Թղթյա ձեռագրում[91]։ Իսկ դրան հաջորդող մասը մինչև «Թագաւորք Պարսիկք Սասանականք» ցանկը նա դիտում է որպես Դավիթ քահանայի կողմից Անդրեասին վերագրված մաս[92] և հիշեցնում է, որ Բ. Սարգիսյանը ժամանակին նկատել է այդ մասի ազգակցությունը «Մոմզենի և Յրիքի հրատարակած Liber generationis I-ինի հետ»[93]։ Ն. Ակինյանը նույնպես գրում է. «Անդրէաս հօս կնույնանա Հիպողիտոսի կամ «Ազգաց գըրքի» Liber generationis (hominum) հեղինակին հետ»[94]։ Ա. Մաթևոսյանը Թղթյա ձեռագրի ամբողջ ժամանակագրությունը (բացառած «Կայսերաց գիրքը») համարում է «Անդրեասի ժամանակագրություն»[95]։

Ն. Ակինյանին հայտնի են եղել Հիպողիտոսի ժամանակագրության հետ առնչվող երեք սկզբնաղբյուր՝ Թղթյա ձեռագիրը, № 5254 ձեռագիրը և Զմմառի մատենադարանի № 204 ձեռագիրը, որը Ակինյանի օրոք գրանցված էր 83-րդ համարի տակ։ Դեռևս 1953-ին նա գրել է. «Հայերեն ձեռագիր մը (նկատի ունի № 5254-ը—Գ. Ա.), որ ասկէ (Հիպողիտոսի ժամանակագրությունից—Գ. Ա.) քաղվածքներ կպարունակէ, խորագիր կկրէ. «Բանք Փիլոնի» («Խօսք Փիլոնի»— Գ. Ա.)... Հայերեն թարգմանությունը կատարված է Ե դարու առաջին կեսին[96], հույն բնագրեն։ Պահված է մեզի միայն Ա մասը Զմմառի վանքին Բ. 83 ձեռագրին մեջ, օրինակած ԺԲ դարուն... Հիպպողիտոսի գործին նոր հրատարակութիւն մը պատրաստած եմ, հիմ առած Զմմառի Բ. 83 և էջմիածնի Բ. 2679»[97]։

Զմմառի ձեռագրից որոշ հատվածներ արդեն տպագրված են[98]։ Ձեռագիրը գրանցված է որպես Շիրակացու Աշխարհացույց, բայց իրականում սկսվում է Հիպողիտոսի ժամանակագրությամբ, որի միայն սկիզբն է պահպանվել։ Ձեռագրից թղթեր ընկած լինելու պատճառով ժամանակագրությունը խառնվել

---

89 Տե՛ս Շիրակացու մատենագրությունը, էջ 376—378։

90 Hippolytus-Werke, էջ 396—397։

91 Ձեռ. № 2679, էջ 29ա-բ։ Հմմտ. Շիրակացու մատենագրությունը, էջ 357—358։ Մեր կարծիքով, ներմուծում պետք է համարել մինչև 359-րդ էջի 17-րդ տողը ներառյալ։ Մարկվարտը ցույց է տվել Անդրեասի «բանաձևը» («Եկաց ամս... մինչև...») այդ և նախորդ էջերում։

92 Hippolytus Werke, էջ 397։

93 Անդ։

94 Ն. Ակինյան, Դավիթ քահանայի խմբագրած ժամանակագրությունը, «Հ. ամս.», 1957, էջ 184։

95 ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր», 1979, № 9, էջ 79։

96 Ն. Ակինյանի ուշադրությունից վրիպել է Ա. Բաումի և Յ. Մարկվարտի բացահայտած այն իրողությունը, որ հայերեն թարգմանությունը կատարված է VI դարում ստեղծված խմբագրությունից (հետևաբար՝ չէր կարող «Ե դարու առաջին կեսին» թարգմանված լինել)։

97 «Հանդես ամսօրյա», 1953, էջ 163։

Ակինյանի անտիպ գործերի մեջ հիշատակվում է «Ժամանակագրութիւնն Հիպպողիտեայ Ե դարու թարգմանութեամբ. ԺԲ դարու ձեռագրէ մը» («Հանդես ամսօրյա», 1954, էջ 414)։ Ինչպես երևում է, սույն աշխատությունը հրատարակության պատրաստ չի եղել։

98 «Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին», կազմեց Մեսրոպ վարդապետ Քէչէճեան, Վիեննա, 1964, էջ 487—488։

է Աշխարհացույցի (որի սկիզբը մնացել է կորած թղթի վրա) հետ, այսպես. «Յարեմ զկողմն արեւմտից և զհիւսիսոյ[99] յոլով յերկիրն ի հիւսիսային կողմանն ՇԹ Ն—Ներեակք եւ անդեն զԹուլիմ կղզի»[100]: Մեր ընդգծածով սկսվում է Աշխարհացույցը, իսկ նրան նախորդող ընդգծվածը պատկանում է Շիրակացուն վերագրված ժամանակագրությանը:

Զմմառի ձեռագրում գտնում ենք Հիպողիտոսի ժամանակագրության այն սկիզբը, որը Թղթյա ձեռագրում բացակայում է և փոխարինված է Խորենացուց և Անդրեասից քաղված հատվածով: Այս ձեռագրի միջոցով միաժամանակ պարզվում է, որ Հիպողիտոսի ժամանակագրությունը Հայաստանում թարգմանված է եղել լրիվ, սկսած հեղինակի խոստաբանությունից: Սակայն համեմատությունը հունարեն բնագրի հետ ցույց է տալիս, որ Զմմառի օրինակն աղճատված է, նրանում կան հունարեն բնագրից շեղվող տեղեր:

Բայց որ նախնական թարգմանությունում այդ շեղումները չեն եղել՝ երևում է, օրինակ, մեր Մատենադարանի № 5443 ձեռագրից[101]: Այստեղ կարդում ենք. «Եւ յետ Ժ ամի ծնընդեան Սեմայ եկն ջրհեղեղն ի ՉՃ-երորդի կենաց Նոյի. և առեալ յԱդամայ մինչ ջրհեղեղն ազգ Ժ ամք ՍՄԽԲ... առնի ի ջրհեղեղէն ազգ Ե ամք ՇԻԵ և յԱդամայ ազգ ԺԵ, ամք ՍՉԿԷ: Բաժինք երկրի յԳ որդւոցն Նոյի յետ ջրհեղեղին»[102] և այլն: Մեր ընդգծած տողերին համապատասխանող տողեր հունարեն բնագրում կան, սակայն Զմմառի ձեռագիրը չունի: Նշանակի № 5443 ձեռագրի գրիչն օգտվել է ավելի ընտիր մի օրինակից: Այսպիսի մի օրինակից է ժամանակին օգտված եղել նաև Թղթյա ձեռագրում քաղվածաբար օգտագործված Անդրեասը, որը նույնպես մեր ընդգծած տեղերն ունի[103]: Մովսես Կաղանկատվացին[104] և № 5254 ձեռագրի գրիչը[105] նույնպես ծանոթ են եղել Զմմառի ձեռագրից ավելի լավ մի ընդօրինակություն պարունակած ձեռագրի, որից քաղել են «Եւ լինին յԱդամայ մինչև ցջրհեղեղն ամք ՍՄԽԲ և ազգք Ժ» տեղեկությունը:

Չորս տարբեր օրինակների[106] համեմատական ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ բոլորում օգտագործված է Հիպողիտոսի ժամանակագրության միևնույն թարգմանությունը, որը ձեռագրերում կրել է փոփոխություններ: Սակայն Ա. Մաթևոսյանը ենթադրում է, որ Թղթյա ձեռագրում պահպանված հիպողիտյան ժամանակագրության հեղինակն Անդրեասն է («Շիրակացուն վերագրվող Պատմության հեղինակ Անդրեասը հույն է»)[107]: Այս Անդրեասի երկում Հիպողիտոսի ժամանակագրությանը համապատասխանող բնագիրը, Մաթևոսյանի կարծիքով, տարբերվում է Զմմառի № 204 ձեռագրում առկա

99 Հմմտ. Շիրակացու մատենագրությունը, էջ 365, տ. 3:

100 Հմմտ. անդ, էջ 337, տ. 4—5:

101 Նույն ձեռագրում «Եւսեբի ի ժամանական կանոնացն» խորագրի տակ Ա. Մաթևոսյանը հայտնաբերել է Հիպողիտոսի թարգմանության մի նոր ընդօրինակություն (տե՛ս ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր», 1979, էջ 79):

102 Ձեռ. № 5443, էջ 395ա: Հմմտ. Զմմառի ձեռագրաց ցուցակ, էջ 487:

103 Հմմտ. Շիրակացու մատենագրությունը, էջ 359:

104 Մովսես Կաղանկատվացի, էջ 3:

105 Ձեռ. № 5254, էջ 190բ:

106 Թղթյա ձեռագիր, Զմմառի ձեռագիր № 204, Մաշտոցի անվ. Մատենադարանի № 5254 և 5443 ձեռագրերը:

107 ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր», 1979, № 9, էջ 79:

Հիպողիտոսից, որի թարգմանիչն Անանիա Շիրակացին է։ Ըստ որում՝ Շիրակացին, ըստ Մաթևոսյանի, Հիպողիտոսի ժամանակագրությունը թարգմանել է այնքան, որքան անհրաժեշտ է եղել «Քննիկոնի տարբեր բաժիններին»[108]։

Մեր կատարած համեմատությունը, սակայն, ինչպես ասվեց, ցույց է տալիս, որ միջնադարյան հայ մատենագրության մեջ գոյություն է ունեցել Հիպողիտոսի երկի միայն մեկ թարգմանություն, որից և սերում են բոլոր չորս օրինակները (նրանց թվում նաև՝ Զմմառի № 204 ձեռագիրը)։ Այդ թարգմանության հեղինակը ամենայն հավանականությամբ Անանիա Շիրակացին է, որը Հիպողիտոսին թարգմանել է լրիվ (և ոչ թե մասնակի՝ «Քննիկոնին» հարմարեցնելու համար)։ Ինչ վերաբերում է չորս օրինակներում հանդիպող տարբերություններին, ապա այդ տեսակետից ուշագրավ է № 5443 ձեռագրում պահպանված մի հինգերորդ օրինակ։ Այստեղ միմյանցից ընդամենը տաս թերթ հեռավորության վրա ընդօրինակված են Թղթյա ձեռագրի ժամանակագրությունում հիշատակվող «գետք մեծամեծք և անուանիք են քառասուն» ցանկերը[109]։ Այս երկու ցանկերի համեմատությունը նույնպես բացահայտում է զանազան տարբերություններ, բայց կասկած չի կարող լինել այն մասին, որ երկրորդ ցանկը ծագում է իրենից տաս էջ առաջ ընդօրինակված՝ Հիպողիտոսի ժամանակագրությունից։

Այժմ համեմատենք Թղթյա ձեռագրից և Զմմառի № 204 ձեռագրից մեկական հատված, ցույց տալու համար, որ երկուսն էլ պատկանում են Հիպողիտոսի միակ թարգմանությանը.

Թղթյա ձեռագիր (981 թ.)

*Որդիք Յաբեթի, երրորդի որդւոյն*
*Նոյի՝ Գամեր, և ի նմանէ*
*Գամիրք... Ընդ ամենայն՝ ազգք*
*հնգետասան։ Եւ ի սոցանէ եղին*
*մեկնեցան կղզիք հեթանոսաց, որ են*
*Կիպրացիք՝ ի Կիտիացւոց, որդիք*
*Յաբեթի։ Բայց դարձեալ զատանեմք*
*և յայնոցիկ, որ են ի կողմանս*
*հիւսիսոյ, որ ազգակից են Կիտիաց-*
*ւոցն։ Եւ ազգք են, որ են*
*ի Հեղաս աշխարհի՝ յայնցանէն,*
*որք յետոյն փոխեցան անդր...*
*Բայց ուսանիմք զճշմարտու-*
*թիւն սոցա յԱւրինաց*
*և ի Մարգարէից...*[110]

Զմմառի ձեռագիր (1178 թ.)

*Որդիք Յաւեթի երրորդ որդւոյն*
*Նոյի՝ Դոմեր և ի նմանէ*
*Դամիրք... Ընդ ամենայն՝ ազգ*
*ժե։ Եւ ի սոցանէ եղին և*
*մեկնեցան կղզիք հեթանոսաց, որ են*
*Կիպրացիք՝ ի Կիտիացւոց, որդիք*
*Յաբեթի։ Բայց դարձեալ զատանեմք*
*յայսոցիկ, որ են ի կողմանս*
*հիւսիսոյ, որ են ազգակիցք Կիտիաց-*
*ւոց։ Եւ ազգ, որ են*
*ի Հեղաս աշխարհի՝ յայնցանէ են,*
*որք յետոյ փոխեցան անդր...*
*Բայց ցուցանեմ քեզ ճշմարտու-*
*թիւն նոցա յԱւրինաց*
*և ի Մարգարէից*[111]։

Այսպիսի նույնությունները համատարած են։ Ինչ վերաբերում է տարբերություններին, դրանք նույն բնույթի են, ինչ որ Աշխարհացույցի ձեռագրերում հանդիպող տարբերությունները, որոնք բոլորովին էլ վկա չեն այն բանի, թե գոյություն են ունեցել Աշխարհացույցի տարբեր թարգմանություն-

108 Անդ, էջ 180։
109 Հմմտ. Շիրակացու մատենագրությունը, էջ 364, № 5443, էջ 398բ և 408ա։
110 Անդ, էջ 359—360, ձ. № 2679, էջ 31ա։
111 «Ցուցակ ձեռագրաց Զմմառի վանքին», էջ 437, ձ. № 204, էջ 7 ա-բ։

ներ։ Զմմառի ձեռագրում գտնվող Աշխարհացույցի համեմատությունը Շիրակացու մատենագրությունում (էջ 336—354) տպագրվածի հետ նույնպես բացահայտում է էական տարբերություններ։

Չորս ընդօրինակությունների համեմատությունը միաժամանակ ակնհայտ է դարձնում այն իրողությունը, որ նրանց բոլորի հիմքում ընկած հեղինակային օրինակը խորագիր չի ունեցել և որևէ հեղինակի անունը չի կրել։ Արտագրողներից յուրաքանչյուրը հետագայում ավելացրել է իր ենթադրած անունը։ Զմմառի № 204 ձեռագիրը մինչև օրս էլ վերնագիր չունի և դա լավագույն ապացույցն է հեղինակային օրինակում բացակայած անվան։ Այս ձեռագրում, ի տարբերություն մյուս բոլորի, պահպանվել է Հիպողիտոսի առաջաբանը, որով ապացուցվում է, որ ժամանակագրությունն իսկապես պատկանում է Հիպողիտոսին և ոչ թե Փիլոնին, Անդրեասին կամ ուրիշներին։ Հունարենի հետ համեմատությունը բացահայտում է որոշ կրճատումներ, սակայն դրանք հեղինակի անվանը վերաբերել չեն կարող, այսինքն՝ հնարավոր չէ, որ հայ թարգմանիչը կրճատած լիներ նաև հեղինակի անունը։ Այն հանգամանքը, որ Զմմառի ձեռագրում, ինչպես նաև Թղթյա ձեռագրում ժամանակագրությունն ընդօրինակված է Շիրակացու երկերի շարքում, հիմք է տալիս ենթադրելու, որ այդ երկերն սկզբնապես գտնված են եղել մի ժողովածուում, որում Շիրակացու անունը նշված է եղել միայն երկերից մեկի վրա։ Մյուս երկերն անանուն են եղել։ Այդ վիճակում էլ ընդօրինակել են հետագա գրիչները։ № 5443 ձեռագրի գաղափար օրինակում ժամանակագրությունը շփոթվել է Եվսեբիոս Կեսարացու երկի հետ և վերնագրում ավելացվել է Եվսեբիոսի անունը, № 5254 ձեռագրի հեղինակն ավելացրել է Փիլոն Եբրայեցու անունը, իսկ Թղթյա ձեռագրում ներմուծվել են Խորենացու և Անդրեասի հատվածները (Անդրեասի անունը նշված լինելով Խորենացուց հետո, ցույց է տալիս, որ այդ ժամանակագիրն ապրել է ուշ դարերում)[112]։ Բոլոր դեպքերում էլ ավելացված անունները վերաբերում են ոչ թե ամբողջ ժամանակագրությանը, այլ նրա միայն այն հատվածներին, որոնք գրիչների կարծիքով պատկանել են հիշյալ հեղինակներին։

№ 5254 ձեռագրի կապակցությամբ կարելի է նաև մտածել, որ Փիլոնի անունը սկզբնապես գրված է եղել գաղափար օրինակի լուսանցքում և հետո է թափանցել տեքստի մեջ։ Այսօր էլ այդ ձեռագրի լուսանցքներում գտնում ենք տարբեր հեղինակների անուններ, ինչպես նաև տեքստի մեջ թափանցած լուսանցագրություններ։ Հենց ժամանակագրության վերջում (էջ 202 բ) ներմուծված է հետևյալ լուսանցագրությունը. «Քսիսութրոս Նոյ ասեն և Զրուանդ Սեմա և Տիտանն Քամա և Յապետոսթե Յաբեթի» (Խորենացի)։ Իսկ ժամանակագրության սկզբում «Խաւսք Փիլոնի» բառերից առաջ ընդօրինակված է «Բարոյախոս» կոչվող առակների ժողովածուի մեղվին վերաբերող առակը։ Քանի որ մեղվին նվիրված մի խոսք էլ ունի Փիլոնը, մյուս կողմից էլ՝ հայտնի է, որ «Բարոյախոսի» հեղինակ է համարվել ի շարս մի շարք այլ հեղինակների նաև Փիլոնը, կարելի է ենթադրել, որ «Խաւսք Փիլոնի» ծանոթագրությունն սկզբնապես լուսանցքում գրված է եղել մեղվի առակը նկատի ունենալով և ապա լուսանցքից տեքստի մեջ տեղափոխող գրիչը լուսանցագրության իրա-

112 Գրիգոր Տղան Անդրեասին նշում է Շիրակացուց հետո (տե՛ս վերը), որով նույնպես հուշում է այն միտքը, որ Անդրեասը ուշ ժամանակներում ապրած մատենագիր է։

կան տեղը չիմանալով՝ տեղափոխել է մեղվի առակի և նրան անմիջապես հաջորդող ժամանակագրության մեջ, որի հետևանքով էլ այժմ Փիլոնի անունն ընկալվում է որպես ժամանակագրությանը վերաբերող անուն:

Ինչպես էլ ընթացած լինի գործողությունը՝ փաստն այն է, որ «Խոսք Փիլոնի» ծանոթագրությունը վերաբերում է հանրահայտ Փիլոն Եբրայեցուն, որը Հիպոլիտոսի ժամանակագրության հետ կապ չունի և սխալմամբ է հայտնվել այդ ժամանակագրությունն սկսող հատվածի դիմաց:

Հայտնի են «Բարոյախոսի» և Փիլոնի երկերի համատեղ ընդօրինակության դեպքեր: Այսպես, օրինակ, Ամրդոլու վանքի ձեռագրաց ցուցակում կարդում ենք այդպիսի երկու ձեռագրերի մասին. «Բ գիրք. Բովանդակ հարց և պատասխանիք Փիլոնի և այլոցն, և միոյն հետն «Բարեխօս»[113]: Թղթյա ձեռագրում (էջ 29ա) ժամանակագրությունից անմիջապես առաջ (տող 7—25) ընդօրինակված է Փիլոնից քաղված մի հատված, որի վրա, սակայն, գրված է «Նորին Անանիայի»[114]: Այս կարգի ընդօրինակությունները նույնպես կարող էին նպաստել Փիլոն Եբրայեցու անվան հայտնվելուն ժամանակագրության սկզբում:

Г. В. АБГАРЯН

## ХРОНИКА, ПРИПИСЫВАЕМАЯ АНАНИИ ШИРАКАЦИ

### Резюме

Греческий текст «Хроники» Ипполита (Hippolytus, род прим. в 170 г., умер 253 г.) долгое время считался утерянным и был опубликован впервые в 1929 г. в Лейпциге (второе издание—Берлин, 1955 г.). До публикации оригинала в научной литературе пользовались латинским и армянским переводами.

Имя армянского переводчика в рукописях не сохранилось, однако по верному мнению большинства специалистов автором древнеармянского перевода является Анания Ширакаци, перу которого принадлежат также другие произведения аналогичного характера. Об одном из таких произведений свидетельствует сам Ширакаци. В Пасхальной речи он называет свое произведение «ժամանակական կանոն», что является дословным переводом греческого «χρονικὸς κανών» и известно также как заглавие «Хроники» Евсевия Кесарийского.

В настоящей статье анализируются данные Пасхальной речи, выявляются новые свидетельства у других средневековых писателей, пользовавшихся трудом Ширакаци, и на основании первоисточников доказывается, что упомянутое в Пасхальной речи сочинение не дошло до нас. Выявлением этого факта одновременно опровергается мнение ученых, отождествляющих утерянный труд Ширакаци с анонимной компиляцией, сохранившейся в рук. № 2679 и изданной в 1904 г. в Венеции (второе издание—Ереван, 1944).

Анонимная компиляция состоит в основном из двух частей: «Хро-

113 Մատենադարան, ձեռ. № 737, էջ 230բ:

114 Տե՛ս «Ցուցակ ձեռագրաց մատենադարանին ի Վենետիկ», հ. Բ, էջ 279:

ники» Ипполита и «Истории греческих императоров». В рук. № 5254 Матенадарана им. Маштоца компиляция начинается примечанием «Слова Филона». На основании этого предполагалось, что автором компиляции является армянский переводчик Филон Тиракаци. Однако в представляемой вниманию читателей настоящей статье показывается, что в примечании имеется в виду знаменитый Филон Александрийский (Еврей), имя которого оказалось в компиляции случайно. Действительным автором первой части компиляции является, как уже известно, Ипполит, а имя автора второй части пока остается неизвестным.

G. V. ABGARIAN

## LA CHRONIQUE ATTRIBUEE A ANANIA CHIRAKATSI

### Résumé

Le texte grec de la „Chronique" d'Hippolyte (Hippolytus, né vers 170, mort en 253) était longtemps considéré comme perdu et il n'a été publié pour la première fois qu'en 1929 à Leipzig (seconde édition: Berlin, 1955). Avant la publication de l'original, c'étaient les traductions latine et arménienne qui avaient cours dans la littérature scientifique.

Le nom du traducteur arménien n'est pas mentionné dans les manuscrits, cependant de l'avis digne de foi de la plupart des spécialistes, l'auteur de la traduction arménienne ancienne est Anania Chirakatsi, à la plume duquel appartiennent aussi d'autres oeuvres de caractère analogue. Chirakatsi lui-même mentionne l'existence de l'un de ces ouvrages. Dans son Discours pascal, il nomme son oeuvre «ժամանակական կանոն», ce qui est la traduction littérale du grec „Χρονικός κανών", connu aussi comme le titre de la „Chronique„ d'Eusèbe de Césarée.

Le présent article analyse les données du Discours pascal, révèle de nouveaux témoignages pris aux autres écrivains médiévaux, ayant utilisé l'ouvrage de Chirakatsi, et, se basant sur les sources, démontre que l'oeuvre mentionnée dans le Discours pascal ne nous est pas parvenue. Cette démonstration réfute en même temps l'opinion des chercheurs qui identifient l'oeuvre perdue de Chirakatsi à la compilation anonyme conservée dans le Ms. № 2679 du Maténadaran et publiée en 1904 à Venise (seconde édition: Erévan, 1944).

La compilation anonyme se compose essentiellement de deux parties: la „Chronique" d'Hippolyte et l'„Histoire des empereurs grecs". Dans le Ms. № 5254 du Maténadaran Machtotz, la compilation commence par la note: „Paroles de Philon". Ceci avait permis de supposer que l'auteur de la compilation était le traducteur arménien Philon Tirakatsi. Cependant, cet article montre que la note mentionne le célèbre Philon d'Alexandrie (le Juif), dont le nom s'est trouvé par hasard dans la compilation. Comme on le sait déjà, l'auteur authentique de la première partie est Hippolyte, tandis que le nom de l'auteur de la seconde partie reste encore inconnu.